# ՄԱՅԻՍ

Լ. ԴՈՒՐՅԱՆ

Քեզ տեսնում եմ, տեսնում, մայիս,
Այս պլեծուփ շարքերի մեջ,
Ամեն սրտի վարկերի մեջ,
Ոլորտներում բիլ եթերի,
Շառաչներում խենթ գետերի
Եվ հավքերի երգերի մեջ,
Յորենաբույր հերկերի մեջ.
Աչքերի մեջ անգամ ծերի,
Որոնման մեջ նոր իղձերի,
Ամեն շենում, ամեն հանքում,
Անուշ մանկան թոթովանքում:
Քեզ տեսնում եմ, տեսնում, մայիս,
Դու բոլորի համար գալիս,
Երկնքում և երկնքի տակ
Տարածում ես քո շունչը տաք,
Ծավալվում ես դու ամենուր,
Որպես գարուն և կյանքի հուր:

Նկ. [illegible]. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ



Նկ. ԱՌԱՔԵԼ ԱՌԱՔԵԼՅԱՆ

# ՍՈՍԻ ԱՐԲԱՆՅԱԿԸ

ԳՐ. ԵՂԻԿՅԱՆ

Լուսի՛ն, լուսի՛ն, ա՛յ լուսին,
Ճանաչու՞մ ես մեր Սոսին.
Այսօր անգործ չի նստել,
Արբանյակ է պատրաստել:
Գործը լուրջ է, կատակ չի,
Ցատկել քեզ մոտ կթռչի:
Ճամփան անծայր երկինքն է,
Կապիտանն էլ հենց ինքն է:
Դե, պատրաստվիր, ա՛յ լուսին,

Հյուր ընդունիր մեր Սոսի
Տես, իր խումբը հետն առ
Արդեն գալիս է թռած:
Մեկը՝ տիկնիկ Անին է,
Մեկը պոչատ շնիկն է,
Մեկն արջուկը՝ դունչը ծա
Մեկն էլ մի շիլ նապաստ
Քաջ են նրանք, խելացի,
Ճանապարհին չեն լացի:

# ԱՆՀՆԱԶԱՆԴ ՀԵԾԱՆԻՎԸ

ԳԻԼԻԳ ԽԱԲԱՆՍԿԻ

Միտյան հորը հանգիստ չէր թողնում։

— Հեծանի՛վ առ...

Հայրը միշտ էլ պատճառ էր գտնում, բայց մի անգամ ասաց.

— Ոտքերդ շատ են կարճ։ Հենց որ մի քիչ երկարեն, հեծանվի փողն էլ պատրաստ կլինի։

Այդ օրից տղան մորը դադար չէր տալիս.

— Մամո,[1] մի տես, ոտքերս չե՞ն երկարել։

Մայրը նայում էր, աչքաչափով որոշում.

— Մի քիչ։

Միտյան նույնիսկ սկսեց ավելի շատ ուտել, որպեսզի ոտքերը երկարեն։ Եվ ահա, երբ լրացավ տղայի չորս տարին, հայրը նրա համար հեծանիվ գնեց, իսկական, եռանիվ, ավելի լավը, քան մինչ այդ Միտյայի տեսած բոլոր հեծանիվները։ Ինչքա՜ն ուրախացավ փոքրիկ տղան, ինչքա՜ն։



Բայց շուտով պարզվեց, որ հեծանիվը կարող է նաև անախորժություններ պատճառել։

— Միտյա, տուն արի,— կանչում էր մայրը։

— Մի քիչ էլ խաղամ,— պատասխանում էր Միտյան առանց հեծանվից իջնելու։

— Շո՛ւտ արա, ժամանակ չունեմ։

Միտյան հեծանիվը քշում, էր բակի մյուս ծայրը։

— Ո՛ւմ հետ եմ,— բարկանում էր մայրը։

---

[1] Մամո — մ...յրիկ (ուկրաիներեն)

Գրեթե ամեն անգամ այս խոսակցությունը վերջանում էր նրանով, որ մայրը հասնում, բռնում էր տղային, սա լաց լինելով քայլում էր առջևից, իսկ մայրը հեծանիվն էր բերում և խրատում:

Բայց դա վաղուց է անցել: Հիմա, հենց որ հայրը կամ մայրը կանչում են, Միտյան իսկույն տուն է գնում:

Ի՞նչ է պատահել: Գուցե տղան մեծացե՞լ է, լսո՞ւմ է ծնողներին:



Գուցե: Բայց այստեղ մի ուրիշ գաղտնիք էլ կա:

Լսեցեք, թե ինչ պատահեց Միտյայի ու նրա հեծանվի հետ:

Մի անգամ տղան դուրս եկավ բակ խաղալու: Երկար ժամանակ հեծանիվ էր քշում, երբ հանկարծ մայրը կանչեց:

— Մի՛տյա, եկ ճաշելու:

— Հիմա, — ձայն տվեց Միտյան, բայց շարունակեց խաղալ։

Քիչ անց մայրը նորից կանչեց։

— Ա՛յ, մի անգամ էլ գնամ ու ետ գամ՝ հետո, — խոստացավ տղան, բայց մի հինգ անգամ ետ ու առաջ սլացավ։

Եկավ հայրը։ Մոտեցավ և հանգիստ հարցրեց.

— Ինչո՞ւ տուն չես գալիս։

Միտյան շփոթվեց, չիմացավ՝ ինչ պատասխանի։ Իսկ հետո հնարքը գտավ.

— Հեծանիվը չի ուզում։

— Ինչպե՞ս թե, — զարմացավ հայրը։

— Ես իրեն տուն եմ բերում, իսկ ինքը ուրիշ կողմ է թեքվում, — բացատրեց Միտյան։

— Ա՛, ահա թե ինչ, — գլխի ընկավ հայրը, — ասել կուզի՝ հեծանի՞վն է անհնազանդ։

— Հը՛, — ուրախացավ Միտյան։

— Որ այդպես է, դու գնա ճաշելու, իսկ մենք դրան կպատժենք։

Միտյան տուն գնաց, բայց տարակուսանքով հարցրեց.

— Հեծանվին ինչպե՞ս պիտի պատժեք։

— Ահա թե ինչպես. մեկ-երկու օրով կփակենք մառանում։ Թող մնա այնտեղ, տխրի մեն-մենակ։

Այս ասելով հայրը բաց արեց մառանը, ներս դրեց հեծանիվը, դուռը փակեց։

— Տատու[1], միգուցե պետք չէ՞...

— Ոչի՛նչ։ Թող իմանա, թե ինչ է նշանակում Միտյային չլսել, — ասաց հայրը։

Ի՞նչ աներ Միտյան։ Սուսուփուս գնաց ճաշելու։

Մյուս օրը վեր կացավ, լվացվեց, նախաճաշեց։ Մի քիչ ձանձրացավ, հետո խնդրեց.

— Մամո, տո՛ւր հեծանիվս։

— Չե՛մ կարող, — պատասխանեց մայրը։ — Հայրիկը նրան պատժել է։

«Մի հարցնող լինի, թե ինչո՞ւ այդպիսի բան հնարեցի հեծանվի մասին, — մտածեց Միտյան։ — Պետք է ասեի,

---

[1] Տատու — հայրիկ (ուկրաիներեն)։

որ ինքս չեմ ուզում ճաշել... Գոնե հայրիկը շուտ գար: Առանց հեծանվի տխուր է...»

Ահա և հայրը տանն է:

— Հը՛, ինչպե՞ս են գործերդ, — հարցնում է Միտյային:

Միտյան լռում է, մտածում է, թե հորից ինչպես խնդրի հեծանիվը: Հայրը կարծես գլխի է ընկնում և հարցնում է.

— Իսկ ինչպե՞ս է իրեն զգում հեծանիվդ:

Միտյան գլուխը կախում է, կամացուկ ասում.

— Լալիս է:

— Իսկ ինչու՞ է լալիս:

— Մենակ ձանձրանում է:

— Թող լաց լինի: Հիմա կհասկանա, թե ինչ է նշանակում Միտյային չլսել:

Միտյան երկար ժամանակ տատանվում է, հետո ասում.

— Էլ չի անի:

— Քեզ խոստացե՞լ է, — հետաքրքրվում է հայրը:

— Ըհը՛:

— Դե որ այդպես է, կարելի է դուրս թողնել, — ուրախ-ուրախ ասում է հայրը:

Եվ ահա Միտյան հեծանիվը նստած՝ բակ է դուրս գալիս:

Հիմա, ինչպես առաջ, ամեն օր էլ նա խաղում է: Միայն թե հեծանիվը դարձել է շատ հնազանդ: Բավական է, որ հայրը կամ մայրը ձայն տան՝ «Մի՛տյա», հեծանիվն իրեն-իրեն տուն է գնում:

*Ուկրաիներենից թարգմ. Գ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

*Նկ. Մ. ԳԻՁԳԻՁՅԱՆԻ*



# ԼԻԼԻԿԻ ՓԻՍԻԿԸ

*ՄԵՏԱՔՍԵ*



Չար Լիլիկը, պատլիկը,
Գրկում էր միշտ խաղալիքը,
Մեկ շոյում էր, սեղմում կրծքին,
Մեկ էլ գցում էր հատակին...
Խաղալիքը նրա թեթև
Մի թավիշե փիսիկ էր սև,
Որ կուչ եկած տան անկյունում
Ո՛չ լալիս էր, ո՛չ գանգատվում:
Աչիկները սիրունատես
Վախից էին սառել կարծես:
Իսկ թավիշե դեմքի վրա
Չէր երևում վիշտը նրա:
Բայց ուզում էր ասել մեկին,
Որ խրատեն չար Լիլիկին...
Որ շնիկն էլ վոր ու գիշեր,
Նրա պոչից չքաշքշեր՝
(Իբր ունի դեռ հին վրեժ),
Ու ցույց տալով կրակը թեժ
«Հա՜ֆ-հա՜ֆ» չաներ, թե կկծի,
Կամ կրակի մեջ կգցի...
Եվ Լիլիկը ձմռան մի օր
Դեռ ժպտում էր երազում խոր,
Երբ շնիկը երես առած,
Խեղճ փիսիկին բռնեց հանկարծ:
Ուզեց ճչալ փիսոն սևիկ՝
Թե օգնեցեք, բարի մարդիկ:
Բայց, ա՜խ, չուներ, չուներ լեզու.
Թե չէ ապրել շատ էր ուզում...



Ինչու՞ փիսոն փախավ խանութ,
Պատժեց իրեն այսքան անգութ...
Լիլիկն այսպես մենակ նստած,
Շատ մտածեց, հիշեց, վգաց,
Որ կոպիտ էր նրա հետ միշտ,
Գուցե սրտին բերել է վիշտ:
Ու որոշեց հայրիկի հետ
Խանութ գնալ իսկույն ևեթ,
Խնդրել, բերել իր փիսիկին,
Խոստովանել մեղքերը հին,
Որ հանցանք է գործել իրոք,
Որ չարն ինքն է, ուրիշ ոչ ոք:
Ու թող փիսոն վերադառնա,
Այն ժամանակ նոր կիմանա,
Թե ինչքան է, ինչքան սիրում,
Իր փիսիկին սև ու սիրուն:



Եվ շնիկը չար, վայրենի,
Բացեց դուռը վառարանի
Ու Փիսոյին իր վարդերով,
Կրակի մեջ գցեց կոռով...
Արթնացել էր Լիլիկը շուտ,
Փիսիկին էր փնտրում անշուշտ,
Բայց փիսիկը տանը չկար,
Ու լալիս էր Լիլիկը չար,
Որ իր փիսոն, փիսոն նորից
Գնացել է խանութը կից:
Ուր Լիլիկը անցյալ ամառ
Խնդրեց հորը, որ իր համար
Այդ փիսիկին միայն բերի...
Բայց չի անցել դեռ մի տարի,

Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

# Մեղրն ո՞վ ուտի

ԿԱՌԼԵՆ ԴԵՎՈՐԳՅԱՆ





Կատուն եկավ մեղվանոց,
մեղվանոց,
Մեղր խնդրեց մի մատնոց,
մի մատնոց,
Քուչիկն հաչեց՝ փի՛շտ, կորի՛ր,
դե կորի՛ր,
Գնա մկներ որոնիր,
որոնիր։
Հետո եկավ բրդոտը,
բրդոտը,
Թավ անտառի ծուռ ոտը,
ծուռ ոտը։

Պապը տեսավ, ո՛նց թակեց,
ո՛նց թակեց,
Արջի աչքից ջուր կաթեց,
ջուր կաթեց։
Մեղրը մնաց Վաչիկին,
Վաչիկին,
Եվ պահապան Քուչիկին,
Քուչիկին։



# Շն

*Սևուկ հաչան շնիկը,*
*Կեղտոտ-մրոտ դնչիկը*
*Խոտի վրա թավալվում,*
*Մեկ խաղում է, մեկ՝ քնում։*

*Կամ կրծում է ոսկորը*
*Ժանիքներով սպիտակ,*
*Նայում է չորս բոլորը*
*Ու մռմռում քթի տակ.*



Նկ. Վ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ







Նկ. Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

—Սևուկ-հաչան շնիկն եմ,
Կեղտոտ-մռոտ դնչիկն եմ.
Ով իմ ոսկորը խլի,
Հաֆ-հաֆ կանեմ, կկծեմ...

Երևանի № 78 դպրոցի 4-րդ դասարա-
նի աշակերտուհի ԱԻԴԱ ԹՈՓՈՒԶՅԱՆ

# Իմ փիսիկը

Ռ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ



Փիսիկ ունեմ,
Սիրուն փիսիկ.
Թաթիկները՝
Փոքրիկ-փոքրիկ,
Բեղիկները՝
Երկար ու ձիգ,
Իսկ պոչիկը՝
Ճերմակ ձյունիկ:
Խնամում եմ
Իմ փիսիկին,
Իմ լավիկին,
Որ մեր տանից
Հեռու քշի
Գող մկնիկին:



Նկ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ




Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

Պապը կարդում էր օրվա բոլոր թերթերը, կարդում էր ծայրից ծայր:

Արամը լսում էր, հարցեր էր տալիս. շատ բան գիտեր պապը, բայց Արամին ամենից շատ հետաքրքրում էին արբանյակները... չէ՞ որ նա երազում էր օդաչու դառնալ:

— Երանի նրան, ով առաջինը լուսնի վրա կբարձրանա, — մտածում էր նա:

Ու հաճախ, շատ հաճախ պատշգամբում կանգնած՝ աչքերը լուսնին հառած, դիտում էր երկինքը...

...Մի օր, երբ խաղաղ ու հանգիստ քուն էր մտել ողջ քաղաքը, երբ սենյակում միայն ժամացույցն էր թիկ-թակ անում... Արամը բարձրացավ, սավառնեց վե՛ր, վե՛ր:



Մութ ամպերը երբեմն փակում էին նրա ճանապարհը, բայց նորից փայլփլում, նորից ու նորից երևում էր պայծառ լուսինը... Իսկ աստղերը վաղուց մեծացել, լուսնի չափ էին դարձել ու ժպտում էին...

Ահա և լուսինը։ Արամը իջնում է ցած...

— Հե՛յ, հե՛յ, — գոռում է նա հանկարծ... Ու դուրս են թափվում բակի երեխաները՝ Արսենը, Վաչիկը, Հրաչիկը, Սարոն, Սաթիկը։

— Ես լուսնի վրա եմ, երեխանե՛ր, լուսնի...

Մեկ էլ տանից լաց լինելով դուրս է գալիս Շողիկը։

— Հա՛, մենակ ես բարձրացել չէ՞, իսկ դու ասում էիր քեզ էլ կտանեմ, հա՛, դու ասում էիր արբանյակի մեջ երկու տեղ եմ պատրաստել՝ մեկը ինձ, մյուսը քեզ համար... Իսկ դու մենակ ես թռել... Դե, հիմա ես էլ կվազեմ փողոց...

— Սպասի՛ր,— գոռաց Արամը...— սպասի՛ր, չգնաս...— ու շտապեց, որ շուտ իջնի ներքև...



— Մա՛, մա՛, — գոռաց Արամն ու մահճակալից ըն-՛կավ ցած:

Հայրիկը, մայրիկն ու պապիկը թռան տեղներից.

— Ի՞նչ պատահեց, Արամ:

— Ա՜խ, մայրիկ ջան, ես լուսնի վրայից վեր ընկա...

— Ինչո՞ւ, Արամ, հապա արբանյակդ, — կատակեց պապը:

— Շտապեցի...

Եվ Արամը պատմեց երազը...

— Դե, մյուս անգամ, երբ նորից լուսնի վրա կբարձրանաս, անպայման Շողիկին էլ քեզ հետ տար, — նրան ծածկելով ասաց հայրիկը:



Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Տրվում է անվճար՝ «ՊԻՈՆԵՐԻ» 1960 թ. 5-րդ համարի հետ



Տեսեք, թե ինչքա՜ն շատ բան ունի այս փոքրիկ խլուրդը՝ քորոց, մեխ, թոկ, իսկ որտե՞ղ պիտի պահի այդ ամենը։ Գրպաններով շալվար է պետք նրան, բայց որտեղի՞ց այդպիսի շալվար գտնի փոքրիկ, խեղճ խլուրդը։ Դրա համար հարկավոր է...

Բայց շտապելու կարիք չկա։ «Պիոների» հաջորդ համարի հետ դուք կստանաք «Թե ինչպես խլուրդը շալվար ճարեց» գրքույկը և ամեն ինչ կիմանաք։

ՄԱՅԻՍ
№ 5 1960 թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
32-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ





# ՇԱԳԱՆԱԿԵՆԻՆ

*ՄԻՆԱՍ ՏԵՐՈՒՆԻ*

Հարավային Ֆրանսիայում, Դյուրանս գետի միջին հոսանքից քիչ վերև, բլրակների վրա կա մի ավան, անունը՝ Սենտ-Օբան։ Ավանից քիչ ներքև, նույն գետի ափերին գտնվում է քիմիական մի գործարան, իսկ գործարանի մուտքի մոտ՝ մի հսկա շագանակենի։

Ժամանակին այդ ծառն ու ես դեռ մանուկներ էինք։

Չգիտեմ՝ ո՞վ էր տնկել այդ ծառը, բայց նա էլ ինձ պես որբ էր ու մենակ։

Ես զարթնում էի ավանում, լողանում գետում, գնում—նստում ծառի նիհարիկ ստվերի տակ և մանկական նախանձով նայում աշխատանքի գնացող բանվորներին ու մտածում, թե ե՞ս երբ եմ աշխատելու, որ կուշտ հաց ուտեմ։

Ամեն օր նախաճաշին շագանակենու մոտ բանվորները ընդհանուր սեղան էին բացում ու ինձ էլ էին հրավիրում։

— Փոքրիկ, ո՞ւր ես փախչում, քեզ ենք սպասում...

— Կուշտ եմ,—ասում էի ես։

— Դե՛, դե՛, փոքրիկ, մեզ չես խաբի։

Մի անգամ բանվորները նախաճաշի չեկան։ Բայց ինձ մոտեցավ կապույտ բաճկոնով մի բանվոր և, թերթի մեջ փաթաթած մի բան տալով, ասաց.

—Փոքրիկ, վերցրու սա։ Այսօր մեր տոնն է, Մայիսի մեկը, կեր և ուրախացիր։

Երբ նա հեռացավ, բացեցի փաթեթը և ուրախությունից քիչ մնաց ճչայի. տապակած նապաստակի միս էր...

Ես իսկույն միսը կերա, թերթը փռեցի տակս ու քնեցի շագանակենու ստվերում։

Արևը Ալպյան լեռների հետևն էր անցել, երբ զարթնեցի։ Վերցրի թերթը և, քանի որ կարդալ չգիտեի, շուռ ու մուռ տվի։ Էջերից մեկի վերևում մուրճ ու մանգաղ էր նկարված։ «Այս հո մայրիկի մանգաղն ու Ժեռոմ եղբոր մուրճն են նկարել» մտածեցի ես։

... Աչքերիս առջև նորից վերակենդանացավ մայրիկը, որ մանգաղը գոտում խրած, խոտի խրձի տակ կքած՝ եկավ-նստեց մեր տնակի շեմքին և հոգնած ձայնեց.

— Պիե՜ռ, Սեւուկի պարանն արձակիր։

Ներսից լսվում էր Սեւուկ այծի մկկոցը։

Գիշեր է. տնքում է մայրիկը։

— Մայրիկ, ինչո՞ւ ես տնքում,—հարցնում եմ ես։

— Մեջքս ցավում է։

— Մայրիկ, էլ խոտի մի գնա։

— Իսկ առանց խոտի Սեւուկը մեզ կաթ չի տա։

— Մայրիկ, ես կգնամ։

— Կմեծանաս, կգնաս...

... Ահա կանգնած եմ Ժեռոմ եղբորս դարբնոցի դռանը և ագահությամբ նայում եմ մուրճի տակից դուրս ցայտող կայծերին, որոնք արտացոլվում են քիչ հեռու դրված ամանի ջրերում, ուր եղբայրս մեկ-մեկ մխրճում է շիկացած երկաթը։ Արտացոլվում են ինչպես Դյուրանսի ջրերում արտացոլվող աստղիկները։



Ես կամացուկ ներս եմ սպրդում և խնդրում.

— Եղբայր, թույլ տուր մի հարված էլ ես իջեցնեմ:

Իսկ նա քահ-քահ ծիծաղում է:

— Չէ՛, սա քո բանը չէ, ծանր է, ինչպե՞ս կվերցնես:

— Հապա դու ինչպե՞ս ես վերցնում:

— Ես մեծ եմ, և ա՛յ, այսպիսի մկաններ ունեմ:

Այդ ասելով, նա ծալում է բազուկը և ցույց տալիս մկանները:

Մի օր էլ, երբ Ժեռոմը, չգիտեմ ուր էր գնացել, ես թաքուն ներս սողացի, վազեցի մուրճի մոտ, որ վերցնեմ-խփեմ, բայց հազիվ էի կոթից բռնել, երբ լսեցի Ժեռոմի ձայնը.

— Հե՛յ, վերցրի՛ր...

Մինչ ես կպատրաստվեի փախչել, նա ինձ ճանկեց, օդ բարձրացրեց, հիացած նայեց աչքերիս և շուրթերը անսպասելիորեն հպեց ճակատիս:

— Աղջնի՛կ, դու հերոս աշխատավոր կդառնաս, իսկ հիմա տար այս շոկոլադը և ծլկիր տուն:

Ես առանց ետ նայելու փախա գետի դաշտերը...

... Բայց ահա Ժեռոմ եղբայրս, որ զինվորի կապտավուն համազգեստի մեջ հեռանում է ավանից: Մայրիկն ու ես լաց ենք լինում: Հետո, հետո մի երկրից սև շրջանակով ծրար ենք ստանում, մայրիկը գիշեր-ցերեկ լալիս է ու հիվանդանում: Սևուկը էլ հիվանդանում է, ես էլ լաց եմ լինում, իսկ մի առավոտ մայրիկը այլևս չի զարթնում...

Այդ նկարը, թերթի նկարը իմ հոգում վերածնեց հուշերը, և ես սկսեցի տար-տար լաց լինել մայրիկի, Ժեռոմի, Սևուկի և ինձ համար... բայց արտասուքները չխանգարեցին, որ ուղեղս լուսավորի մի միտք: Ինչու՞ շագանակենու բնին չփորագրել մանգաղը՝ մայրիկի հիշատակին, մուրճը՝ Ժեռոմի...

Մտածելս ու անելս մեկ է լինում. ես գրպանիցս հանում եմ գետափին գտած դանակս և սկսում փորագրությունը:

Ահա այդ օրվանից շագանակենին ու ես եղբայրացանք:

Շուտով ես նկատեցի, որ բանվորները ժպտալով ցույց էին տալիս շագանակենու այն մասը, որ մուրճ ու մանգաղն էր դրոշմված:

Ես չէի հասկանում, թե ինչու՞ են նրանք ժպտում:

Մեծանում էր ծառը, մեծանում էի և ես: Ես սկսում էի ամաչել, որ ուրիշների հացով եմ ապրում...

Մի առավոտ, երբ հեռվից նորից նկատեցի կապույտ բաճկոնով բանվորին, վազեցի նրան ընդառաջ:

— Քեռի, օգնեցեք, որ ես էլ աշխատեմ:

Բանվորը ծանր-ծանր մտածելուց հետո, հարցրեց.

— Անունդ ի՞նչ է, փոքրիկ:

— Պիեռ:

— Պիեռ, քանի՞ տարեկան ես:

— Մայրիկս ասում էր, որ արդեն յոթ տարեկան եմ: Նա մահացավ այս ձմեռ, երևի ութ տարեկան կլինեմ:

— Ու՞մ մոտ ես ապրում:

— Մայրիկը որ կենդանի էր, ապրում էի մայրիկի հետ մեր անկյունում, ավանի ծայրին, իսկ հիմա մենակ եմ, գիշերները էլ վախենում եմ...

— Ո՞վ է քեզ կերակրում:

— Բարի մարդիկ, ամաչելով ասացի ես:

— Ո՞վ է քեզ խնամում:

— Մեկ-մեկ հարևանները, մեկ-մեկ էլ՝ ոչ ոք...

Բանվորը տխուր-տխուր ինձ նայելով, ասաց.

— Շատ ես պստիկ, Պիեռ, բայց ի՞նչ արած, աշխատել է պետք: Սպասիր ինձ:

Նա գնաց և քիչ հետո վերադառնալով, նորից հարցրեց.

— Պիեռ, կուզե՞ս թղթատար աշխատել:

— Ի՞նչ եմ անելու, քեռի...

— Թղթեր ու գրություններ կտանես տեղից-տեղ:

— Հաց կտա՞ն դրա համար:

— Փող կստանաս, այդ փողով էլ հաց կգնես:

Ես սկսեցի աշխատել, որպես թղթատար: Աշխա-



տանքն ինձ դուր եկավ, մանավանդ, որ բանվորները ինձ շրջապատեցին զուրգուրանքով։ Նրանք սկսեցին ինձ կարդալ սովորեցնել։ Շուտով կապույտ բաճկոնավորը մի թերթ տալով, ասաց.

— Սա, Պետո, մեր թերթն է, կարդա, շատ բան կսովորես...

Երբ թերթը բացեցի, զարմացա։ Սրա ճակատին էլ զարդարված էր մուրճ ու մանգաղով։

...Նույն տարվա գարնանը բանվորները գործադուլ արին։ Նրանք ամեն օր հավաքվում էին գործարանի մուտքի մոտ, շագանակենու շուրջը։

Մայիսի մեկին միտինգ էր շագանակենու մոտ։ Մեկը կարմիր կտոր կապեց ծառին։ Կապույտ բաճկոնավորը կրակոտ ճառ արտասանեց։ Մենք ծափահարեցինք։

Երբ արևը իջավ Ալպյան լեռների ուսին, ոստիկաններ եկան և մեզ քշեցին գործարանի մոտից։

Առավոտյան, երբ նորից փայլեց արևը Դյուրանսի վրա, մենք նորից եկանք գործարանի մուտքի մոտ, բայց, ավա՜ղ, այլևս չկար իմ շագանակենին...

Գիշերն այն կտրել էին ոստիկանները, կտրել էին այն տեղից, ուր մուրճ ու մանգաղ էր դրոշմված։

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

* * *

Երբ գարունը նորից բացվեց Դյուրանսի ափերին, շագանակենին նորից ծիլեր արձակեց, կտրված բունը ծածկվեց սպիտակ ու գեղեցիկ ընձյուղներով։

Իսկ երբ աչքերի նման բաց ու խուփ եղան շատ-շատ գարուններ, շագանակենու փարթամ ճյուղերը ծգվեցին դեպի արևելք, դեպի արևմուտք, դեպի հյուսիս և հարավ...

Ես այլևս մուրճ ու մանգաղ չփորագրեցի շագանակենու բնին, որպեսզի ոստիկանները նորից ծառը չկտրեին, բայց բանվորները նրա առջևից անցնելիս ժպտալով ասում էին.

— Սա մեր մուրճ ու մանգաղով շագանակենին է...




ՊԵՏՅԱ ՎԱՍԻԼԵՎԱ

Նկ. Յ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Խնձորենին գարնանային մեծ տոն ուներ այդ օրը: Դեռ վաղ առավոտյան նրա ծաղիկները հագել էին իրենց գեղեցիկ՝ վառ-վարդագույն զգեստներն ու այնպես անուշ էին օծվել, որ նրանց բուրմունքն արբեցնում էր այգի մտնողին: Զուգված խնձորենու ծաղիկները նման էին այն փոքրիկ պարուհիներին, որոնք սրտատրոփ սպասում են բեմ դուրս գալու: Նրանցից ավելի անհամբերներն արդեն բաց էին արել իրենց կարճլիկ շրջազգեստներն ու թեթև թրթռացնում էին, կային և ամաչկոտները, որ դեռ կուչ էին եկել իրենց տեղերում:

— Էլ ինչու՞ ենք սպասում,— հարցնում էին ծաղիկները՝ անհամբեր հայացքները ճյուղերին ուղղելով:

Բայց ճյուղերը լռում էին:

Ծաղիկների համբերությունն էլ հատնում էր:

— Ե՞րբ են գալու առաջին հյուրերը,— հարցնում էին ոմանք:

— Իսկ ովքե՞ր են հրավիրված,— հետաքրքրվում էին ուրիշները:

— Քամին ու մեղուները,— պատասխանեցին նրանք, ովքեր տեսել էին հասցեագրված հրավիրատոմսերը:

Առաջինը ժամանեց քամին: Բոլորը սիրում էին նրան, որովհետև նա շատ ուրախ ու զվարթ էր: Ծաղիկները լսել էին նրա մասին, որ իբր շատ կատաղած է ու մեծ ավերածություններ է կատարում, բայց նրանք չէին հավատում այդ խոսակցություններին:

Քամին եկավ ուսին մի լայն ու երկար թիկնոց գցած, երեսները փոքրիկ երեխայի նման ծիծաղելիորեն ուռեցնելով: Եկավ առանց նախազգուշացնելու, և պարն ամիջապես սկսվեց: Բոլորն ուրախացան: Քամին այնպես ուժեղ էր օրորում փոքրիկ ու քնքուշ ծաղիկներին, որ նրանց զգեստները խելահեղորեն ծածանվում էին և նույնիսկ մի քանիսն էլ պատռվեցին:

Նա ոմանց գլխի վրայից ծաղկափոշին վերցնում ու փչում-տանում էր հեռու տեղեր, և այդ այնպես զվարճալի էր:

Քիչ հետո ժամանեցին նաև մեղուները, ու տոնախմբությունն ավելի աղմկոտ և ուրախ դարձավ: Բոլորն երգում ու պարում էին, իսկ ժրաջան մեղուները ուրախանալիս էլ չէին մոռանում իրենց գործը: Նրանք աշխատում էին ինչքան կարելի էր շատ ծաղկափոշի լցնել իրենց փոքրիկ տոպրակների մեջ, միաժամանակ ամենաագահ կերպով կուլ տալով այն քաղցր նեկտարը, որ ծաղիկներն իրենք էին պատրաստել:

Ուրախությունը ինչպես բոլոր մեծ տոնախմբությունների նման տևեց երեք օր, մինչև որ ծաղիկների վարդագույն զգեստները բոլորովին սպիտակեցին, ջարդվեցին ու կտոր-կտոր եղան:

— Ինչքա՜ն ենք տգեղացել,— ասում էին ծաղիկները իրար վրա նայելով:

Իրոք որ նրանք բոլորովին էլ սիրուն չէին այդպես... մի տեսակ մերկացած, գլուխներին առէջքի մի դեղին փնջիկ ցցած միայն:

— Ինձ թվում է, թե ես սկսում եմ չաղանալ,— ասաց ծաղիկներից մեկը:

— Ե՛ս էլ, ե՛ս էլ,— սկսեցին ձայն տալ չորս կողմից:

Հիմա, ամեն օր պարտիզպանը մեջքին մի մեծ ցնցուղ դրած, գալիս-կանգնում էր ծառի տակ ու երկար ուսումնասիրում նրա ճյուղերը:

Մի առավոտ էլ խնձորենու բունը զգաց այն ծանոթ խուտուտը, որ ամեն անգամ տարվա այս ժամանակ զգում էր: Նրա ճեղքվածքներից սկսեցին դուրս թռչել մուգ-գորշավուն թիթեռներ, բոլորովին նոր թևերով: Նրանք առաջին անգամ էին լույս աշխարհ գալիս և, չդիմանալով դրսի կուրացուցիչ լույսին, չգիտեին որ կողմը թռչեն: Ի վերջո, ամեն մեկը թռավ մի ճյուղի վրա ու էլ պոկ չեկավ նրա վրայից: Այդպես ճյուղերին մեխված նրանք մնացին այնքան ժամանակ, մինչև որ արևը մայր մտավ: Ապա, կարծես ավելի լավ տեսնելով երեկոյան աղջամուղջի մեջ, նրանք շարժվեցին իրենց տեղերից ու թռան փոքրիկ ծաղիկների վրա: Իսկ ծաղիկներն արդեն բավականին հասունացել էին:

— Նորից հյուր են գալիս մեզ,— շշնջացին իրար ծաղիկները...— Նորից ուրախություն կլինի:

— Մի՛ վստահեք դրանց, մի՛ պարեք դրանց հետ,— զգուշացնում էր ներքևից ծառի բունը:— Դրանք խաբեբա չարագործներ են:

Բայց այդ տարօրինակ թիթեռները դեռ չէին էլ մոտեցել ծաղիկներին, երբ շատ անսպասելի մի բան տեղի ունեցավ: Պարտիզպանը, որը շարունակ պտտվում էր ծառի շուրջը, ցնցուղն ուղղեց ծաղիկների վրա, և թիթեռները խայթվածի պես սկսեցին գետին թափվել այդ թունավոր հեղուկից:

Շատ դաժան ու անողոք էր կատարվածը, բայց պարտիզպանը, ըստ երևույթին, այդպես չէր մտածում, որովհետև նա անընդհատ կրկնում էր.

— Ա՜խ, երանի բոլորը սատկեն, ոչ մի հատ չմնա:

Ծառաբունը նույնպես համաձայն էր նրա հետ. ինչ հաճելի էր ամբողջ ձմեռ իր վրա այդպիսի զզվելի միջատներ կրելը: Երբեմն նա խնդրում էր փայտփորիկին, որպեսզի գա կտցահարի դրանց և մի փոքր թեթևանում էր, բայց թրթուրներից ոմանք շատ խոր էին մտնում, և փայտփորիկի ծուռ կտուցը չէր կարողանում նրանց հասնել: Հիմա ծառաբունը մայրական քնքշությամբ նայեց վերև, և բարի մի ժպիտ տարածվեց նրա կոպիտ կնճիռների վրա: Ծաղիկները վեր էին ածվել փոքրիկ, կլորիկ պտուղների:

Այդ րոպեին մի քանի թիթեռներ, որոնց ըստ երևույթին, չէր հասել թունավոր հեղուկը, որովհետև ամենաբարձր ճյուղի վրա էին գտնվում, շտապ-շտապ իջնում էին փոքրիկ պտուղների վրա ու ինչ-որ բան հաշվում:

— 40—50: Դեռ տասը ձու ունեմ:

— Հիմա կարող եմ հանգիստ սրտով մեռնել,— ասաց մի ուրիշ թիթեռ, վերջին անգամ թառելով մի ծաղկի վրա:— Ես բոլոր ձվերիս համար տեղ արեցի:

Իսկ ծաղիկները, այժմ արդեն պտուղները, զարմանում էին տեսնելով սպիտակ սերմերը, որ թիթեռները թողնում էին իրենց վրա:

Արևը տաքացրեց արդեն սերմերը, և ուղիղ տասներորդ օրը նրանք տրաքվեցին, ու փոքրիկ, սպիտակ որդեր դուրս եկան:



— Բարի լույս.— ասաց որդուկներից մեկը՝ խընձորի գագաթին սողալով:

Բայց փոքրիկ խնձորն այնքան էր զարմացել, որ ոչինչ չգտավ պատասխանելու:

— Բարի լույս,— կրկնեց որդուկը, չնայած արդեն կեսօրվա մոտ էր:— Դու գիտե՞ս, որ ես ապրելու եմ սրտիկիդ մոտ: Այդպես պատվիրեց ինձ մայրիկս:

— Բայց դու ո՞վ ես,— վերջապես հարցրեց պտուղը:

— Ես այն թիթեռի թրթուրն եմ, որ մի երեկո այցելեց քեզ: Ես պետք է քեզնով սնվեմ:

Պտուղը ցնցվեց և վրդովված ասաց.

— Իսկ ինչու՞ քո մայրիկը չի կերակրում քեզ, ինչպես բոլոր լավ մայրիկները:

— Իմ մայրիկը մահացավ, երբ իր բոլոր ձվերն ածեց,— տխուր պատասխանեց թրթուրը:

— Մի՛ լաց լինի,— ասաց փոքրիկ խնձորը:— Ուրեմն դու ո՞րբ ես:

Թրթուրը ինքն էլ հուզվեց, բայց նա ուզենար էլ, չէր կարող լաց լինել, որովհետև աչքեր չուներ:

— Հիմա ի՞նչ է լինելու իմ դրությունը, չէ՞ որ դու ինձ ուտելու ես,— վախեցած ասաց խնձորիկը:

— Ո՛չ, ես շատ քիչ եմ ուտում,— մխիթարեց նրան թրթուրը:— Մինչև դու աճես, մեծանաս, ես հազիվ կկարողանամ մի փոքրիկ թունել բաց անել քո միջով ու մյուս ծայրից դուրս գալ:

Իրոք որ թրթուրը շատ չէր ուտում, բայց կարևորն այդ չէր: Խնձորիկը շուտով սկսեց թոշնել ու դեղնել: Թրթուրը նրա ուղիղ սրտի մեջ էր սողում, նա լիզեց պտուղի փոքրիկ կորիզները, և սրանք վախեցած կուչ եկան ու այլևս չաճեցին:

Ամբողջ ամառը թրթուրն իր համար ճանապարհ էր բաց անում: Երբ վերջապես նա դուրս եկավ խնձորի կեղևի վրա, մի բարալիկ պարան հյուսեց իր քթից ու նրա վրայով ներքև սողաց:

— Մնաս բարով, խնձորիկ,— հրաժեշտ տվեց նա:

Բայց խնձորը ոչինչ չպատասխանեց: Դժվար բան է մեծահոգի լինել մեկի նկատմամբ, որը այնքան վատություն է արել քեզ: Խնձորի գեղեցիկ այտի վրա հիմա մի անճոռնի սև ծակ էր բացվել:

Ծառի տակ խաղ էին անում պարտիզպանի երեխաները:

— Տես ինչ սիրուն խնձոր է,— մատով ցույց տալով ասաց մի փոքրիկ աղջիկ:

— Հիմա կքաղեմ քեզ համար,— պատասխանեց նրա եղբայրն ու մագլցեց ծառի վրա:

— Օ՜... օ՜... որդոտն է եղել,— հիասթափված գոչեց աղջիկը, խնձորը բռնելով:

— Եկող գարունն ես հայրիկին կօգնեմ, որպեսզի այնպես սրսկի այս խնձորենին, որ հասնի մինչև ամենաբարձր ճյուղերը: Որպեսզի բոլոր թրթուրները սատկեն: Այն ժամանակ ո՛չ մի որդոտ խնձոր էլ չի լինի,— ասաց տղան վճռականորեն գլուխն օրորելով:

*Բուլղարերենից թարգմ. Մ. ԹԵՐԶՅԱՆ*




Ռ. ՂԱՄԱՐՅԱՆ

Մի՛ օր, երբ տանը ստուգում էի աշակերտներիս տետրակները, աչքիս ընկավ մի հաստ տետր: Տետրի վրա ոչ անուն կար, ոչ ազգանուն: Բաց անելով առաջին էջը, նկատեցի մեծ տառերով գրված հետևյալ խոսքերը. «Հուշատետր: Սկսել եմ արձակուրդներից հետո»: Իսկ դրանից ներքև, դարձյալ մեծ տառերով, «Սահակ Գրիգորյան»:

«Ուրեմն, Սահակի տետրն է»,— մտածեցի զարմացած: Պարզ է, հայոց լեզվի տետրի փոխարեն Սահակը սխալմամբ տանից բերել ու հանձնել էր իր հուշատետրը:

Ահա այդ հուշատետրը, որ այնքան էլ մեծ չէ, քանի որ գրել էր միայն արձակուրդներից հետո:

* * *

«Ասում են, որ շատ նշանավոր մարդիկ են հուշատետրեր ունեցել: Ես էլ եմ ցանկանում ունենալ: Այսօր *հունվարի 11-ն* է, և որոշեցի այսօրվանից սկսել: Ճիշտ է, ես նշանավոր մարդ չեմ, բայց դա ի՞նչ նշանակություն ունի: Որոշել եմ այս տարվանից լավ սովորել: Ի՞նչ է, կարծում եք չե՞մ կարող, ա՛յ, կտեսնեք: Բոլորն ասում են, որ ես կամքի ուժ չունեմ: Իսկ դա վիրավորական է: Ա՛յ, որոշեցի և վերջ: Լավ եմ սովորելու:

Ասում են անկարգ էլ եմ: Ես միշտ ցանկանում

եմ լավ բան անել, բայց արի տես, որ հակառակն է ստացվում։ Ա՛յ, հենց այսօր։ Առաջին օրն էր, որ դպրոց էինք եկել։ Ում որ արձակուրդների ժամանակ չէի տեսել, կարոտել էի։ Դպրոցի բակը լիքն էր աշակերտներով։ Դեռ զանգը չէր տվել։ Մեր դասարանցիներին տեսա թե չէ, վազեցի նրանց մոտ, ուզում էի քաղաքավարի բարևել, հատկապես՝ աղջիկներին։ Նրանց հետ ավելի քաղաքավարի պետք է լինել, խռովկան են ու շուտ են նեղանում։ Բայց այս անգամ էլ նեղացան։ Աննկատ մոտենալով աղջիկների խմբին, Քնարիկի մազերից թեթև քաշեցի։ Թարսի պես մեր աշխարհագրության դասատուն տեսավ և դիտողություն արեց։ Դե, էլ ինչպե՞ս բարձր տրամադրությամբ դասի նստես, երբ արձակուրդներից հետո, նույնիսկ դեռ առաջին դասը չսկսված, նկատողություն ես ստանում։

Այսօր հինգ դաս ունենք։ Տխուր նստեցի, տխուր էլ վեր կացա։ Դասերից հետո մենակ տուն գնացի։ Վռամը փորձեց հետս գալ, բայց չուզեցի, կարծեմ մի չոր խոսք էլ ասացի։

* * *

Տանը քույրս՝ Սուսանը գործ էր անում։ Սկզբում ծաղիկներն էր ջրում, հետո, կարծեմ, ճաշ էր պատրաստում։ Նույնիսկ մի անգամ էլ ինձ դիմեց, ասելով.

—Սահակ ջան, փայտ բեր վառարանի համար։

—Էդ էր պակաս։ Ի՞նչ է, ես քեզ համար ծառա՞ եմ,—պատասխանեցի։

Քույրս նեղացած ինձ նայեց ու մրթմրթաց քթի տակ, բայց հասկացա, որ ուզում էր ասել, ես կոպիտ եմ, անկարգ, չեմ օգնում ուրիշներին, ամեն ինչ ցանկանում եմ պատրաստի ստանալ։ Դե, հո առաջին անգամը չէ՞ր, որ նման խոսքեր էի լսում։

Հետաքրքիր է, ինչո՞ւ աղջիկները տղաներին չեն սիրում, ինչո՞ւ են նախանձում, որ տղաները ուժեղ են, խելոք,—ասացի ես։

—Քեզ նման տղաները ոչ ուժեղ են, ոչ էլ խելոք,—պատասխանեց քույրս.—խելոք և ուժեղ է նա, ով մի օգտակար գործ է կատարում, իսկ դու...

—Ի՞նչ, ուրեմն ես ոչ մի օգտակար գործ չե՞մ կատարում։

—Ինձ որ հարցնեն, կասեմ՝ ոչ, հայրիկն էլ գոհ չէ քեզանից։

—Հայրի՞կը, գուցե ասես, որ մայրիկն էլ է դժգոհ։

—Բա ի՞նչ, քանի՞ անգամ են նրան դպրոց կանչել ու ասել, որ դու անկարգ ես, դասերը լավ չես սովորում։

Այդ խոսքերից ես շատ վիրավորվեցի։ Դե, չէ՞ որ ինքս ինձ խոսք էի տվել լավ սովորել։

—Ասում ես վա՞տ եմ սովորում, կտեսնենք, թե ով է լավ սովորում, դու բերանացի ես անում դասերդ, իսկ ես հասկանալով եմ սովորում։

—Հասկանալով, ինչպե՞ս չէ։ Հասկանալով սովորողը քաղաքավարի էլ կլինի, տան գործերում էլ կօգնի։

—Է՜, դո՛ւ էլ։ Ի՞նչ ես ուզում ինձանից։

—Ուզում եմ, որ փայտ բերես։

Եվ գիտե՞ք ինչ, բերեցի փայտը։ Հետո չգիտեմ ինչպես եղավ, մի քիչ էլ ջարդեցի, պատրաստեցի հաջորդ օրերի համար։ Մի տեսակ լավ ստացվեց։

*Հունվարի 13։* Նորից անհաջողություն։ Աշխարհագրության դասը չէի սովորել։ Դասատուն ասաց որ «2» է նշանակում։ Ինձ թվում է, որ դասատուները մեկին սիրում են, մյուսին՝ ոչ։ Թե չէ, արձակուրդներից հետո ինչո՞ւ առաջինը հենց ինձ պիտի դաս հարցներ ընկեր Վարդումյանը։ Քնարիկի հետ դարձյալ կռվեցինք։ Այդ դեռ ոչինչ, բայց զարմա-



նալին այն է, որ մեր տղաներից շատերը Քնարիկին պաշտպանեցին։ Մտքումս դրեցի Վռամին մի լավ դաս տալ, և երբ դասերից հետո ցանկացա նրան «ձեռքերով քննադատել» Վռամը բռունցքն այնպես համարձակորեն մոտեցրեց դեմքիս, որ ես միտքս փոխեցի։ Համա թե համարձակն է եղել Վռամը, առաջ էդպես չէր։ Երբ այդ մասին ասացի, նա պատասխանեց:

— Զիմանաս՝ թե որևէ մեկը վախենում է քեզանից։

Եվ ի՞նչ... բանից պարզվեց, որ բոլորը խոսքները մեկ են արել։

Տխուր վերադարձա տուն։ Երեկոյան հայրս հետաքրքրվեց, թե ի՞նչ դասեր ենք ունեցել։ Ես ուզեցի ստել, որ ցույց չտամ օրագրիս մեջ եղած «երկու» գնահատականը, բայց խոստովանեցի:

— Այդ լավ չէ,— ասաց հայրս։— Հենց առաջին օրերից «երկու» ես ստանում։

Ես ուզեցի արդարանալու պատճառներ գտնել, բայց չգտա։ Այսօր դասերի վրա շատ նստեցի։ Չէ՞ որ որոշել եմ լավ սովորել:



Նկ. ԱՇՈՏ ԴԱՄՊԱՐՅԱՆԻ

*Հունվարի 16։* Երեկ հավաքույթ կար։ Եվ ի՞նչ եք կարծում, քննարկում էին վատ սովորողների և անկարգապահների հարցը։ Քնարիկը, Վռամը, Սամվելը և մյուսները տաք-տաք խոսում էին, ասում, որ ես չեմ սիրում պիոներական վզկապը... Հետո օրինակներ բերեցին։ Ճիշտ է, հավաքույթների ժամանակ ես ելույթ չեմ ունենում, բայց այս անգամ չկարողացա լռել: «Իսկ ո՞վ եմ ես,— մտածում էի,— ինչո՞ւ են բոլորը միանգամից վրաս հարձակվում»։

Եվ ձայն խնդրեցի։ Ասացի, որ որոշել եմ լավ սովորել, որ արդեն տանն էլ եմ ծնողներիս օգնում, որ...

— Կտեսնենք,— ասաց ջոկատավարը,— թե ինչպես ես խոսքդ կատարում։ Իսկ հիմա եկեք Սահակին ընտրենք մեր պատի թերթի խմբագիր։

Ես մնացի զարմացած։ Երևի շատերն էին զարմացել, որովհետև առարկողներ եղան, բայց մեծամասնությունը համաձայնեց ջոկատավարի հետ։ Ու ի՞նչ կա որ, կդառնամ պատի թերթի խմբագիր։ Այսօր պատմությունից չորս ստացա։ Այդ արդեն ուրախացրեց բոլորին: Նույնիսկ դասամիջոցին Քնարիկը մոտեցավ ինձ ու ասաց. «Ապրես»։ Ես ոչինչ չպատասխանեցի, բայց անչափ ուրախ էի։ Ինձ թվում է աղջիկներն այնքան էլ վատը չեն։ Օրինակ՝ քույրս էլ ավելի լավ է վարվում հետս, ասելով.

— Եթե դու հարգես ուրիշներին, ապա նրանք էլ քեզ կհարգեն։ Ինձ թվում է, որ նա ճիշտ է ասում։

*Հունվարի 18։* Այսօր դասամիջոցներից մեկի ժամանակ ինձ մոտեցավ Վարդուշը և մի ծալած թուղթ տվեց։ Ահա թե ինչ էր գրված այնտեղ. «Պատի թերթի խմբագրին։ Խնդրում եմ գրածս տեղավորեք պատի թերթի առաջիկա համարում»։ Նյութը վերաբերում էր ինձ, որ վերջերս սկսել եմ լավ սովորել, ուշադիր եմ դասերին, խելոքացել եմ, տանը օգնում եմ ծնողներիս, այդ հավանաբար Սուսանն էր ասել։

Ես կարծում եմ, որ այդպիսի նյութ պատի թերթում տեղավորել չի կարելի։ Գուցե մի ուրիշ կերպ գրվի։ Արժե մտածել։ Գիտե՞ք ինչ, երբ մարդ մի քիչ մտածում է, լավ մտքեր են գալիս գլուխը։ Եվ որոշեցի ամեն օր մի քիչ մտածել, հաշիվ տալ ինքս ինձ, թե ինչն է վատ, ինչը՝ լավ։ Այ, հենց մտածելու ժամանակ էլ հասկացա, որ իսկապես անկարգ եմ եղել ու հիշեցի շատ դեպքեր։

*Հունվարի 23։* Այսօր փակցրի պատի թերթի առաջին համարը։ Դեռ դասերը չէին սկսվել։ Երեխաներն անմիջապես հավաքվեցին պատի թերթի առաջ։ Առաջաբանը ես էի գրել, և ահա այդ նյութն էին բարձրաձայն կարդում։

«Բոլոր աշակերտներն էլ մեկ են դասատուների համար, եթե միայն նրանք կարգապահ են ու դասերն էլ լավ են սովորում։ Տանն էլ ծնողներն են նրանց լավ վերաբերվում։ Սակայն առաջ այդպես

# Գարունն իմ երկրում

Դ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

Ջերմ հայացքով արեգակի
Եկավ ահա գարունն անգին…
Եկավ, կախեց մատներն իր շող՝
Շշնջալով. «Զարթնի՛ր իմ հող»,
Ու մայրական մի քնքշությամբ
Նա բաց արեց վերմակը ձյան.
Հողը բացեց աչիկները,
Կարմիր-կապույտ ծաղիկները,
Եվ մեծի պես՝ վարժ ու հմուտ,
Հագավ շորեր զառ ու զմրուխտ.
Կանգնեց ամպի ցնցուղի տակ
Ու լվացվեց ջրով հստակ,
Ապա կապեց իսկույն վզին
Ալվան փողկապը մայիսի
Եվ առվակի լեզվով զնգուն
Երգեց կյանքի հիմնը խնդուն…
Ծաղկի՛ր խաղաղ, բուրի՛ր, երգի՛ր,
Գարուն հագած իմ մա՛յր երկիր։

Նկ. Ռ. ՄԱՐԳԱՐՅԱՆԻ

չէին կարծում մեր ջոկատի մի քանի պիոներներ, օրինակ Սահակը, Արշավիրը…»

Ես հեռացա պատի թերթի մոտից։ Իսկ սիրտս, մի տեսակ, արագ էր խփում, չգիտեմ ինչու։

Այսօր պատմությունից հինգ ստացա, ռուսերենից՝ չորս։

*Հունվարի 25։* Հենց նոր ավարտեցի հայոց լեզվի տնային առաջադրանքը և գրում եմ հուշատետրս։ Թվանշաններս քանի գնում բարձրանում են։ Ոչ մի երեք չեմ ստացել։ Միայն մի «երկու» ունեի, այն էլ ուղղել եմ։ Ուռա՜։ Խոսքս կատարում եմ։ Իսկ ասում էին կամքի ուժ չունեմ։ Տեսա՞ք։ Ախր գիտեի, որ կամքի ուժ ունեմ»։

Այստեղ ավարտվում է Սահակ Գրիգորյանի հուշատետրը։

Կարդացի, ավարտեցի ընթերցումը և մտածեցի, թե ինչքան կարճ ժամանակում մարդ կարող է փոխվել, լավը դառնալ։

Հուշատետրի վերջին էջում ես կարմիր մատիտով «5» նշանակեցի, ոչ միայն նրա համար, որ ուղղվել է Սահակը, այլև նրա համար, որ հուշատետրի մեջ չկար և ոչ մի սխալ։ Ո՞վ գիտե ինչ կմտածի Սահակը, երբ նկատի, որ հուշատետրն է ինձ հանձնել։ Բայց մի բան պարզ է, որ նա այսուհետև չի ամաչի նայել թե ուսուցիչների, թե ծնողների և թե ընկերների աչքերին։

## ԾԱՂԿԱԶԱՐԴ ՄԱՅԻՍ

*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*

*Անտառն ու այգին*
*Ծաղկունքով զուգել,*
*Մայիս, դու կրկին*
*Մեզ հյուր ես եկել։*

*Մեզ կանչել ես դուրս*
*Ուրախ շքերթին,*
*Բերել ես նոր հույզ,*
*Նոր խինդ մեր սրտին։*

*Ալ դրոշներով,*
*Ծաղկունքով պես-պես,*
*Մենք անհուն սիրով*
*Գովերգում ենք քեզ։*

*Երգը շրթներիս*
*Ցնծում ենք, գոչում.*
*— Ծաղկազարդ մայիս,*
*Քեզ հազա՛ր ողջույն։*



ՎՍԵՎՈԼՈԴ ԿՐԱՎՉԵՆԿՈ

Ռկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Վլադիկ Սարիժին պարտիզան ընդունելը շատ հոգսեր պատճառեց, որոնք կապված էին զանազան ձևականությունների հետ: Իսկ սրան ջոկատի հրամանատար բեռի Ստեփանը ուղղակի բերեց պարտիզանական խարույկի մոտ և ասաց.

— Ահա՛, տղերք, մեր ջոկատի նոր մարտիկը: Պայթեցնող է, փորձված՝ իր գործի մեջ: Տերյոշկա է անունը: Քսան տարեկան է:

Ապա, նայելով պարտիզաններին, հարցրեց.

— Սարիժն այստե՞ղ է:

— Այստեղ է, ընկեր Ստեփան,—ձայնեց Սարիժը:

— Քեզ կցում եմ Տերյոշկային որպես... մի խոսքով էնքակա, կամ որպես հանձնակատար: Հասկացա՞ր:

Սարիժն այն է, ուզում էր բացել բերանը, որպեսզի բողոքի, խնդրի ազատել իրեն այդ պարտականությունից, բայց բեռի Ստեփանն իսկի չսեց էլ նրան, գնաց իր հրամանատարական գետնափոր տունը:

Սարիժը նայեց Տերյոշկային. «Սա՞ ինչ է, որ հանձնակատար ունենա» մտածեց նա: Միջահասակ, բարալիկ, թուխ, հագին՝ բամբակյա բաճկոն, մահուդե շալվար, ոտքերին՝ կարճ ճիտքերով կոշիկներ: Պիտի ասել, որ հագուստը նրա վրա լավ էր նստել, բաճկոնը ամուր ձգված էր զինվորական գոտիով, որից կախված էր կաշվե ամուր պատյանով դանակը: Ինքը, Տերյոշկան էլ ոտքից գլուխ բարեկազմ ու ճկուն էր: Սակայն այդպիսի բարեկազմ ու ճկուն տղերք ջոկատում շատ կային: Եվ հետո, ասացեք խնդրեմ, որտե՞ղ է նրա զենքը: Մի փոքր դանակից բացի ոչինչ չունի, նույնիսկ նագան չունի: Եվ ինչպե՞ս են նրան ընդունել ջոկատ առանց զենքի:

— Հը՛մ...—այն է ուզում էր քննադատաբար քմծիծաղ տալ Սարիժը, որը ինչքան ասես զենք ուներ: Ուսից կախված էր ավար վերցրած գերմանական ավտոմատը, գոտուց՝ նռնակներ, նագան, հետո ինչ-որ մարտական պայուսակներ: Բայց Տերյոշկան ձեռքը դրեց նրա ուսին և ժպտաց: Ժպտաց միայն աչքերով, լուսավոր, թափանցող, ինչ-որ հնավոր թախծի երանգով և անմիջական արտասանեց.

— Սարի՛ժ...

Եվ մի այնպիսի բան զգաց Վլադիկը Տերյոշկայի ձայնի մեջ, որ իսկույն կուլ տվեց իր ճնշող «հըմ»-ը:

Իսկ Տերյոշկան մոտեցավ խարույկին, տղաներից վերցրեց կիթառը, նստեց շրջանի մեջ, բերնակի խփեց լարերին ու երգեց.

*Ախ դու կարմիր մորենի, և ի՞նչը քեզ կոտրեց...*
*Ախ դու սպիտակ պճնամոլ, ի՞նչը քեզ չորացրեց...*

Տերյոշկայի ձայնն այնպես դուրեկան էր, փափուկ և այնպես սրտառուչ, որ թվում էր, թե բխում է ուղղակի սրտից: Եվ չգիտես ինչու՝ Սարիժի մոտ թշնամությունը միանգամից չքացավ: Ավելին՝ որքան շատ էր զննում նրան, այնքան ավելի էր լցվում հարգանքով:

Սարիժի զուշակությունը նոր պայթեցնողի ակնառու ընդունակությունների մասին, իսկապես որ հաստատվեց: Եվ հաստատվեց հենց առաջին իսկ մարտական գործողության մեջ: Հանգամանքներն այսպիսին էին: Ջոկատը լուր էր ստացել, որ վաղը՝ լուսաբացին, դեպի արևելք է մեկնում թշնամու գնացքը. շատ կարևոր ռազմական բեռով: Հրամայված էր, որ այդ գնացքը ոչ մի դեպքում չպետք է հասնի նշանակված վայրը, այդ կարևոր գործողությունը հրամանատարը հանձնարարեց անձամբ Տերյոշկային: Ուղեմասում երկաթուղին պահպանվում էր առանձնահատուկ ուշադրությամբ—յուրաքանչյուր մետրի վրա քայլում էր ժամապահը, ամեն մի երկու հարյուր մետրի վրա դզոտ կար՝ ուժեղացված պահակախմբով: Տերյոշկան, իհարկե, գիտեր այդ, բայց չնայած դրան՝ բոլորովին չանհանգստացավ:

Կեսգիշերին նրանք արդեն պառկել էին երկաթուղային գծից ոչ հեռու:

— Դու մնա այստեղ, իսկ ես սողալով գնամ, մեջտեղից վերացնեմ ժամապահին,—շշուկով ասաց Տերյոշկան:—Հենց որ բուն կռնչա, ինձ կբերես պայթուցիկը:

Ասաց և իսկույն կորավ խավարի մեջ:

Եվ ահա Վլադիկը պառկել ու մտածում է Տերյոշկայի մասին, իսկ շուրջը լռություն է տիրում: Սեպտեմբերյան գիշերներին հատուկ է այդպիսի թափանցիկ, անշարժ լռությունը: Եվ հանկարծ Վլադիկը լսում է բուի հատու ճիչը. «Կու՛-դա՛, կու՛-դա՛»: Վլադիկը վերցրեց պայթուցիկը և սողաց դեպի երկաթուղին: Տերյոշկան նրան սպասում էր ուղղակի երկաթուղային գծերի մեջ: Նրա ոտքերի մոտ պառկած էր սպանված հիտլերականը:

— Ես պայթուցիկը կդնեմ, իսկ դու սրան թփերի մեջ քարշ տուր և սպասիր ինձ...—հրամայեց նա:

Մի խոսքով՝ առավոտյան գնացքը պայթեցված էր և ֆաշիստական նոր տանկերը ցած էին գլորվել զառիթափից՝ դառնալով ջարդված մետաղի մի կույտ:

Մի ուրիշ անգամ նրանց վիճակվեց ավելի դժվար առաջադրանք կատարել: Պարտիզանները մահվան դատավճիռ կայացրին հարևան տեղամասի պարետ պարոն ֆոն Կուրեցի նկատմամբ: Այդ ֆաշիստական հրեշը ծաղրուծանակի էր ենթարկում սովետական մարդկանց: Սկզբում մտածում էին Կուրեցին պարզապես սպանել, բայց հետո վճռեցին, որ դահճին քիչ է այդպիսի մահապատիժը: Որոշեցին նրան բերել անտառ ու կախել: Եվ ահա Տերյոշկային հանձնարարեցին Կուրեցին կենդանի բռնել և բերել հավաքատեղին:

Պարտիզանական մարտական առօրյան միշտ էլ լի է վտանգով: Երբ, ասենք, պարտիզան-հետախույզին հարկավոր է հետախուզել թշնամու որջը, նրան վիճակվում է քայլել կյանքի և մահվան միջև ընկած մի բարակ ճողի վրայով և բավական է մի փոքր սայթաքել, որպեսզի ընկնես անդունդը: Իսկ Տերյոշկան շատ անգամ էր գնացել այդպիսի ճողերի վրայով, մասնակցել վտանգավոր գործողությունների, մեն-մենակ գնացքներ պայթեցրել, պահեստներ այրել, բայց ո՛չ մի անգամ գնդակ չէր դիպել նրան...

Վլադիկը եզրակացրեց, որ Տերյոշկան պարզապես բախտ ունի: Նա նույնիսկ ընտելացավ այն բանին, որ իրենց ամենավտանգավոր գործողությունը հաջողությամբ էլ պետք է ավարտվի:

Ճիշտ է, հիմա, երբ պառկել էր ֆոն Կուրեցի այգում, նա այնուամենայնիվ հուզվում էր:

Եվ հանկարծ՝ «Կու՛-դա՛, կու՛-դա՛»: Ծանոթ թռչուն է: Վլադիկը վազեց դեպի թռչունը և մորենու թփերի մոտ տեսավ, որ Տերյոշկան արդեն այնտեղ է, իսկ նրա գրկում կապոտած, խցված բերանով թպրտում է ինքը՝ պարետ ֆոն Կուրեցը: Որպեսզի վերջնականապես համոզվի, որ դա հենց Կուրեցն է, Տերյոշկան լուսավորեց նրա դեմքը, ու թեև սարսափից ծամածռված ու կապտած «հերր»-ը այժմ շատ քիչ էր նման ֆաշիստական այն հրեշին, որը կարգադրություններ էր անում կախաղանների մոտ, տղաները ճանաչեցին նրան, բերեցին կայան և մյուս օրը պարտիզանները ի կատար ածեցին իրենց արդարացի դատավճիռը:

Մի անգամ երեկոյան Վլադիկն ու Տերյոշկան պառկել էին խարույկի մոտ: Ուշ էր: Պարտիզանները ցրվել էին գետնափորները, և նրանք մնացել էին մենակ:



— Զարմանում եմ քեզ վրա, Տերյոշկա,— լռությունը խախտեց Վլադիկը,— ի՜նչ բախտավորն ես դու:

— Իսկ ինչու՞,— հարցրեց Տերյոշկան:

— Այնպես: Գնդակը քեզ չի կպչում, ոչնչից դու չես վախենում, ինչի էլ, որ ձեռք զարկես, հաջողվում է:

— Ա-ա՜,— անորոշ պատասխանեց Տերյոշկան՝ մտածկոտ նայելով խարույկին:

— Այ՜, ես ինչ-որ տեղ կարդացել եմ թալիսմանի մասին: Մի չնչին բան է, ասենք՝ կավից փղիկ կամ պայտ, բայց մեծ ուժ ունի: Մի նավապետ, որին Լապսեն էին կոչում, այդպիսի թալիսման ուներ, և նրա նավը ոչ մի փոթորիկից չէր վախենում: Քանի դեռ նրանից չէին գողացել այդ թալիսմանը, նա լողում էր ամենավտանգավոր հոսանքներում:

Վլադիկը լռեց ու խարույկի մեջ գցեց փայտի մի կտոր:

— Իհարկե, այս բոլորը սուտ է,— ասաց նա մտածելով:— Բայց նայում եմ ես քեզ, և ինձ երբեմն թվում է՝ դու էլ մի այդպիսի թալիսման ունես...

Տերյոշկան ժպտաց: Հետո ձեռքը լռությամբ տարավ գրպանը և հանեց ինչ-որ տուփ: Նա զգուշությամբ բացեց այն և ավեց Վլադիկին: Տուփի մեջ դրված էր հասարակ, պղնձյա մի մատանի:

— Ուրեմն այդ ճի՞շտ է,— զարմանքից իրեն կորցրած հարցրեց Վլադիկը:— Դու թալիսմա՞ն ունես:

Տերյոշկան տուփը լուռ դրեց գրպանը, պառկեց և նորից սկսեց մտածկոտ նայել խարույկին:

Մի անգամ էլ մենակ մնալով Տերյոշկայի հետ, Վլադիկը վճռեց իմանալ ճշմարտությունը:

— Լսի՛ր, Տերյոշկա, ես ուզում էի քեզ հարցնել...

— Ի՞նչ:

— Այն մատանու մասին: Դա ճի՞շտ է, թե դու ծաղրում էիր:

Տերյոշկան ժպտաց.

— Խենթու՛կ...

Եվ հանկարծ ժպիտը մեկեն սառեց նրա շուրթերին, և պայծառ աչքերը լցվեցին թախիծով:

Տերյոշկան շուռ եկավ գնաց, իսկ Վլադիկը կանգնել նայում էր նրա ետևից և մտածում էր՝ ինչո՞ւ «խենթուկ»: Միթե նրա համար, որ կասկածում եմ պղնձե մատանու ուժին, կամ նրա համար, որ միամտաբար հավատացի նրան:

Մարտերում ու երթերում օր-օրի, աննկատ անցնում էր պարտիզանական կյանքը: Մի անգամ ուշ աշնանը ջոկատ եկավ մի մեծ ղեկավար, պարտիզանական գեներալ հայր Գալայը: Գեներալը լսեց հրամանատարի զեկույցը և պարտիզաններին շնորհավորեց մարտական հաջողությունների համար: Դա համեստ և հասարակ մարդ էր, կարճ կաշվե մուշտակով, հանգիստ, փոքր-ինչ հոգնած դեմքով, բոլորը գիտեին, թե ինչ հերոսական արարքների է ընդունակ այդ մարդը, որովհետև դրանց փառքը թնդում էր ամբողջ Բելոռուսիայում, իսկ հիտլերականները հայր Գալայի գլխի համար խոստացել էին հարյուր հազար մարկ: Պարտիզանները շնչները պահած, որսում էին հերոսի ամեն մի բառը: Հետո գեներալը պարգևներ ավեց, առաջինը մարտական շքանշաններ ստացան Տերյոշկան ու նրա բարեկամ Վլադիկ Սարիժը:

Հետախույզներին գյուղ ուղարկելով, պարտիզանները բարձնվեցին լեռ մոտ, կաղամախու խիտ անտառում: Հետախույզների մեջ էր նաև Տերյոշկան: Վլադիկին վիճակվեց պառկել կաղամախու անտառում քեռի Ստեփանի կողքին: Հրամանատարն ամբողջ ժամանակ հեռադիտակով նայում էր դեպի գյուղը: Նա, ըստ երևույթին, հուզմունքով էր սպասում հետախուզության արդյունքներին, որովհետև դրանցից էր կախված գործողության հաջողությունը: Վլադիկը մոտեցավ հրամանատարին:

— Քեռի Ստեփա՛ն,— կիսաշշուկով ասաց Վլադիկը:— Չեմ ասի թե բոլորի, բայց Տերյոշկայի համար ես չեմ մտածում: Նրա հետ ոչինչ չի պատահի:

— Ինչու՞,— զարմացած հարցրեց Ստեփանը:

— Գուցե ձեզ ծիծաղելի թվա,— Վլադիկը շփոթված խոնարհեց աչքերը,— բայց նա բախտ ունի, թալիսման: Ինչ էլ լինի՝ միևնույն է, նրան գնդակ չի դիպչի: Դրա համար է մարտի ժամանակ նա այդպես համարձակ:

— Իսկ այդ ի՞նչ թալիսման է նրա մոտ:

— Նա մի մատանի ունի, որ Տերյոշկան միշտ իր մոտ է պահում: Ինձ մի անգամ ցույց է ավել:

Քեռի Ստեփանը դարձավ դեպի Վլադիկը: Նրա դեմքը հանկարծ դարձավ դաժան ու խիստ:

— Դու, Վլադի՛կ, երեխայի պես միամիտ ես, թալիսմա՞ն... ֆաշիստները տանջել են Տերյոշկայի մորը, նա մեռած մորից է վերցրել այդ մատանին: Նրա թալիսմանը ատելությունն է ֆաշիստների հանդեպ:

Շփոթված Վլադիկը լռեց:

Իսկ հետո զգույշ ու կամացուկ դեմքը թաղեց կաղամախու դեղին տերևների մեջ: Հիանալի էր բուրում ոսկե աշունը:

*Ռուսերենից թարգմանեց՝ Մ. ՄԱՐԳԱՐՅԱՆ*






№ 5 ՄԱՅԻՍ 1960

## ԾՈՎԱՅԻՆ ԲԱՆՋԱՐԱՆՈՑ

Հաճախ սովետական Հեռավոր Արևելքի ու Ճապոնիայի ափերին, ծովախորշի կանաչավուն ջրերում կարելի է տեսնել քարերին կպած կամ ծանծաղուտների մոտ աճած ջրաբույսերի (լամինարիայի) մուգ շերտեր:

Լամինարիան (ծովային կաղամբ) Չինաստանում շատ սիրված ուտելիք է: Սակայն Չինաստանի ափերին նրանք վատ են աճում, և չինացիները տարիներ շարունակ ստիպված են եղել ներմուծել Ճապոնիայից:

Վերջերս, Չինաստանի Գիտությունների Ակադեմիայի ծովային կենսաբանական կայանում մշակված այդ սննդարար ու օգտակար բույսերի աճեցման ամբողջ մի սիստեմ:

Հայտնի է, որ լամինարիայի նորմալ աճին, հարավային ծովերում, խանգարում են տաքություն սիրող բազմատեսակ անօգտակար ջրաբույսեր: Մինչդեռ ջրային կաղամբը հանույքով աճում է նաև սառը ջրում: Օգտվելով անա այս բանից, վերցնում են սառը ջրով լի հսկայական խոր տաշտեր, մեջը նոպաններ կախում ու լցնում լամինարիայի սերմը: Սերմերը արագ ծլում են ու նոպանին փաթաթվելով, աճում: Որոշ ժամանակ անցնելուց հետո, կանաչապատ նոպանները հանում են տաշտից ու բամբուկե լողակների միջոցով 2—3 մետր կախում սառը ծովածոցի ջրի մեջ: Այս կատարում են աշնանը, երբ ջուրն արդեն սառն է, և ջրային մոլախոտերը այլևս չեն խանգարի կաղամբի հետագա աճին: Լամինարիաների թփերը արագ աճում են, և մի տարի անց մի նոպանից կարողանում են հավաքել 130 կիլոգրամ հյութալի զանգված:

Ցինդաո քաղաքին մոտիկ ծովախորշերից մեկում ստեղծված է առաջին «Ծովային բանջարանոցը»: Նրա մակերեսը մոտ 40 հեկտար է: Լամինարիաների աճեցման այս միջոցը մեծ հեռանկար ունի:

Այս ձևով ծովային կաղամբ ստանալը շատ ու շատ ավելի էժան է նստում, քան ուրիշ երկրներից բերելը:

## ՏՈՒ՛Ն-ԿՈՂՈՎԸ

Իրաքի հարավում, Տիգրիս և Եփրատ գետերը դանդաղորեն հոսելով ստեղծում են բազմաթիվ ճյուղավորումներ, որոնցից շատերը ժամանակի ընթացքում կորչում են ճահիճներում:

Այստեղ ընդարձակ տարածությունները ծածկված են մի քանի մետր բարձրություն ունեցող եղեգնուտներով, իսկ գետերի ափերին գտնվում են արմավենիների պուրակները:

Ճահիճներում գտնվող կղզյակների վրա կան տարօրինակ շինություններ, որոնք հիշեցնում են հյուսված կողովների: Դրանք «ճահճուտային» արաբների գյուղերն են: Արմավենու բնափայտից կառուցած տները շատ ծանր կլինեին խոնավ հողի համար: Այդ պատճառով արաբները իրենց տները հյուսում են եղեգնից:



Եղեգնյա հյուսվածքները թաղում են հողում և վերևի ծայրերը ամրացնում: Մուտքը փակում են նույնպիսի հյուսվածքով, իսկ հատակին փռում են խսիրներ: Եվ խրճիթը պատրաստ է:

Եղեգներից կառուցում են ավելի բարդ «շենքեր»՝ ցանցավոր պատուհաններով, բարձր, դուրս ցցված կամարներով և «սյուներով»: Դա արդեն իր տեսակի մեջ իսկական ճարտարապետություն է: Այսպիսի «շենքեր» կառուցում են գյուղերի կենտրոնում, որոնք ծառայում են թե՛ որպես ակումբ, թե՛ կրպակ, թե՛ հյուրանոց:

Եղեգնից հյուսված շինության կյանքը կարճ է: Նրանք դիմանում են քսան տարուց ոչ ավելի:




ԼԵՈՆԻԴ ՀՈՒՐՈՒՆՑ

*Ինձ հայտնի չէ նրա տոհմածառը: Չգիտեմ, թե երբ հայտնըվեց մեր կողմերում, որտեղից է: Նրան աճեցնելու համար իմ պապերն ու նախապապերը քրտինք չեն թափել: Աճում է ինքնիրեն, իր կարողության չափով բար տալիս, որից սարերում օղի են քաշում, մուրաբա եփում:*

*Անբարետես է մեր հոնի թուփը: Ճյուղերն սկսում են ուղղակի գետնի երեսից: Կարծես վախենալով հողից կտրվել՝ դրանք ցած են իջնում, հպվում արմատին:*

*Հոնի թուփն իր ամենաբուռն ծաղկման շրջանում ծածկված է նոսր վարդագույն մշուշով: Այնուհետև չարժե նայել. անհրապույր թուփ է և խամրում է լեռնալանջերի գեղանկար տեսարանները:*

*Բայց ի՞նչ կյանք է տրոփում այդ փոքրիկ ծառի մեջ, եթե իմանա՜ք...*

*Վրա է հասնում ձմեռը, գալարվում է գետնահողմը, և թվում է, թե չկա մեր հոնի ծառը. թաղվեց ձյան տակ:*

*Մյուս ծառերը ձմռանը կարծես ցածրանում են, իսկ մեր հոնը բոլորովին անհետանում է: Հապա*

(Շարունակությունը 2-րդ էջում)

# Ակրոբատ ձկները

Ակրոբատ ձկները ապ-րում են Ամազոնում, որոն-ցից խիստ բազմազանու-թյան մեջ՝ նրանց «ակրո-բատներ» են կոչում՝ բազ-մացման շրջանում իրենց խիստ ինքնատիպ վարքի համար:

Սկզբում անսովոր ա-րուն և էգը ընտրում որո-նում են ջրի մակերևույ-թին շատ մոտ բույսեր: Ձկները երկար լողում են նրանց տակ, ինչ մակեր-ևույթի մոտ: Երբեմն նը-րանք փորձնական թռիչք-ներ են կատարում ջրից վերև, կամ պարզապես ջրից դուրս են ցցում գը-լուխները: Վերջապես փոր-ձնական «ակրոբատները» վեր-ջում և սուզվում հեռա-ված դուրս են թռչում ջը-րից բավականին բարձր, շուռ են գալիս օդում, փո-խում գլուխ վեր և կպչում տերևի ներքևի մակերե-վույթին: Այդ ստորոտնակ դիրքում նրանք կախվում են մի քանի վայրկյան, իսկ հետո նորից ջուրը ընկնում:

Այդ կարճ ժամանակա-միջոցում՝ էգը հասցնում է ձկնկիթ դնել, որը կըպ-չում է բույսին: Մի սառ բացի հետո, ձկները կրկը-նում են իրենց ակրոբա-տիկ համարը: Եվ այդպես անընդհատ, մինչև կդնեն ամբողջ ձկնկիթը: Ձկները չունեն ոչ ծծիչներ, ոչ էլ յուրծուն ելուստներ, որոնց միջոցով նրանք կկարո-ղանային կպչել բույսին: Դա նրանց մոտ կատար-վում է ինքնատիպ ձևով: Հենց այն պահին, երբ ձկնե-րը թռչում են բույսին, նը-րանք կարուկ շարժումով մի փոքր հեռանում են իրարից և թռված կողերի միջև առաջանում է նոս-րացված տարածություն, ո-րի շնորհիվ նրանք ամուր ծծվում են տերևի կողմից:

Հետագա բոլոր հոգսերը իր վրա է վերցնում արուն: Ժամանակ առ ժամանակ պոչով ուժեղ ջրի հարվա-ծելով, նա ջուր է շաղ տալիս ձկնկիթի վրա, որ-պեսզի այն չչորանա:

Երկրորդ օրվա վերջում դուրս են գալիս ձկնիկները և մեկը մյուսի հետևից ջուրը ընկնում:

Հիմա շատ սիրողներ տնային ակվարիումներում



բազմացնում են ակրո-բատ-ձկներ: Նրանք շատ համբերատար են և եթե չեն գտնում համար բույս, ապա ձկնկիթը են դնում ակվարիումի կա-փարիչի վրա:

## ՊԱՏՍՈՒԱՔԱՂՆ ԱՆԳԼԻԱՅՈՒՄ

Ժամանակին Թոմաս Կորիատ անունով մի անգլիացի ճամբոր-դել է Իտալիայում և իր օրագրում հետաքրքրական նկարագրու-թյուններ է թողել սրանցեի պա-լատների, նայակաց ղարձանների և այլ հուշարձանների մասին, բայց այդ բոլորից շատ նրան զարմացրել ու հիացրել է մի բան, որ հիմա շատ հասարակ է թվում: Օրագրում գրված է.

«Իտալացիները միս ուտելիս գործ են ածում երկաթից կամ պողպատից, երբեմն էլ արծաթից շինված փոքրիկ եղաններ: Նրանք երբեմն միսը ձեռքով չեն ուտում, որովհետև ձեռքերը երբեմն մաքուր չեն լինում»:

Կորիատը, երբ Անգլիա վերա-դարձավ, նա իր հետ վերցրած պատառաքաղով ուզեց պարծե-նալ իր բարեկամների շրջանում: Հանդիսավոր ճաշի ժամանակ նա գրպանից հանեց պատառաքաղը և սկսեց ճաշել իտալական եղա-նակով: Բոլորը զարմացած նրան էին նայում, չէ՞ որ այդ ժամա-նակ Անգլիայում բացառապես անգամ միսը ձեռքով էր բռնում:

Կորիատը բացատրեց սեղա-նակիցներին այդ գործիքի առող-ջապահական նշանակությունը: Սեղանակիցները վիրավորվեցին. «Մի՞թե Կորիատը կարծում է, որ անգլիացիների ձեռքերը կեղ-տոտ են, մի՞թե տանտեր ավել 10 մատը հերիք չէ, որ նրան երկու երկաթե մատ էլ ավելաց-նենք...»

Կորիատը ցանկացավ ապա-ցուցել պատառաքաղի առավե-լությունը, բայց հենց առաջին կտոր միսը դուրս պրծավ պա-տառաքաղից և կեղտոտեց սփո-ռոցը:

Հյուրերը բաց-բաց խնդացին, և խեղճ Կորիատն ամոթահար գրպանը դրեց պատառաքաղը:

Ուզում եմ ամեն ինչ իմանալ

էջ 2

## ԱՐՔԱՅԱՕՁԸ

Հարավային Ամերիկայում՝ Բրազիլիայում, Վենեսուելայում ապրում է օձերի մեջ ամենա-գեղեցիկը՝ արքայաօձը կամ վի-շապ օձը: Նրա երկարությունը 4 մետր է: Արքայաօձի կար-միր-մոխրագույն մարմինը ծածկված է խոշոր, դեղին, եր-բեմն կարմրագույն խալերով:

Այս օձերը ոչնչացնում են առնետներին: Դրա համար էլ նրանց շատ են սիրում տեղի բնակիչները և պահում են իրենց պահեստներում: Նրանք որս են կատարում գիշերը, իսկ ցերեկը պառկում են արևի տակ, տնե-րից ոչ շատ հեռու ու պպզա-նում: Եթե էլ տանելու լինեն վիշապ օձին, նորից նա վերա-դառնում է իր նախկին տեղը:

(Սկիզբը 1-ին էջում)

ի՞նչ անի այդ պստլիկ ծառը, ինչ-պե՞ս պահի գլուխը, եթե ձյուներին քառում նույնիսկ ընկուզե-նին նման է սառնամանիքով կաշ-կանդված չնչին, մեռյալ շառավա-նի:

Դալարվում է գետնահողը, մի տեղ սրբում-տանում ձյունը, մի այլ տեղ բլուրներ կազմում: Օր-որվում են ընկուզենու մերկ, սա-ռած ճյուղերը: Թվում է, թե վերջ ու ծայր չունեն այս ձյունեղեն փոշու հյուսքերը, որոնք իրենց տակ են առել սար ու ձոր:

Եվ հանկարծ սպիտակ՝ քառսում բռնկվում է կարմիր բոցը:

Դա հոնի ծառն է: Նախազգա-լով գարնան բուրմունքը, ծաղկել է, փորձում է թոթափել անակնկալի եկած ձմռան լուծը: Բայց ապար-դյուն: Մոլեգնած ձմեռը փոթորկ-վում է, մռնչում, կատաղորեն նետվում փոքրիկ թփի վրա, հանգ-ցընում կյանքի առաջին երկչոտ կայծերը:

Զորս կողմը դարձյալ սպիտակու-թյուն է, սպիտակություն: Գա-լարվում է գետնահողը, օրորում ընկուզենու սառած ճյուղերը, և հոնի ծառը նորից է բացում իր ծաղիկները:

Ձմեռը նույն թափով նետվում է փոքրիկ, համառ թփի վրա, բայց ծառն զգում է, որ ձմեռն էլ այն չէ, չունի նախկին զորու-թյունը: Միայն ընկուզենին է ա-ռաջվա նման հուսահատ օրորում սառած ճյուղերը:

Ձմեռը դժվարությամբ է հանգ-

եղել են գյուղեր, երբ մեկը վաճառելով իր բնակարանը՝ վաճառել է նաև իր օձին:

## ՆԵՂՈՍ ԳԵՏԻ ՁԿՆԻԿԸ

Նեղոս գետում 7 սանտիմետր երկարությամբ մի զարմանալի ձուկ է ապրում: Տեղական բնա-կիչները այդ ձկանն անվանում են «Բուլտաս»: Նրա մեջքը բաց-մանուշակագույն է, փորը՝ սպիտակ, ամբողջ մարմինը ծածկված է կապտագույն բծե-րով: Այդ ձուկն ունի մանր ու

ցրնում բունկված նոր կյանքը: Փոքր ինչ սպասելով, անհավասար, դաժան մենամարտից հետո կարծես ուժ հավաքելով, հոնի ծառը մի ակնթարթ կշտամբալից հայացք է նետում հլու-հնազանդ ընկուզենուն, որը դեռևս չի հավատում բնության փոփոխմանը և կրկին նետվում պայքարի:

Այս անգամ արդեն պատված ձմեռը ոչինչ անել չի կարող: Ինքն է ժամ առ ժամ ուժասպառ լինում:

Իսկ վարդագույն շղարշով ծածկված փոքրիկ հոնի ծառը իր ամբողջ տեսքով կարծես ասում է. «Ձմեռ, չկարծես, թե ինձ հաղթեցիր: Ես կեղծ ծաղիկներ էի քեզ ցույց տալիս: Իսկականը, պտղաբեր ծաղիկները պահում էի իմ սրտում»:

## ՅԱՍԱՄԱՆԻ ՃՅՈՒՂԸ

Իմ սեղանին ծաղկամանով դրված է թարմ յասամանի մի ճյուղ: Պատուհանից տեսնում եմ հալած ձյան տակից սևին տվող քաղաքամերձ հողաշերտեր, մերկ, թախծոտ սարալանջեր: Ձյուն եմ տեսնում նույնիսկ քաղաքային ծառերի կատարներին, բայց իմ սենյակում գարուն է:

Ընկերս ապրում է հովտում, ինձանից մի կիլոմետր ցած: Դա-

(Շարունակությունը 4-րդ էջում)

սուր ատամներ: Նա բազմանում է հետևյալ կերպ. արուն պոչով փորում է ավազը, իսկ էգը ձու է դնում: Բեղմնավորված ձվերը (թվով 30—40 հատ) էգը առնում է բերանը և մոտ երկու շաբաթ ոչինչ չի ուտում: Երբ ձագերը մի քիչ մեծանում են, մայրը բացում է բերանը, և նրանք դուրս են գալիս: Փոքրիկ ձկներն ամենուր հետևում են իրենց մորը: Բավական է, որ մի վտանգ երևա, մայրն իսկույն բացում է բերանը, և նրանք թաքնվում են այնտեղ:

## ՀՊՎՈՂ ՈՍՊՆՅԱԿՆԵՐ

Ստեղծել այնպիսի ակնոցներ, որոնք գտնվեին ակնախնձորի հետ անմիջական հպման մեջ, մտածում էր դեռ Լեոնարդո դա Վինչին: Անգլիական ֆիզիկոս Ջոն Հերշելը անցյալ դարի քսանական թվականներին առաջարկեց ակնոցները փոխարինել հեղուկով լցված ժելատինե պատիճներով:




Վերջին տարիներին արտասահմանում պլաստմասայից և ապակուց սկսեցին պատրաստել հպվող ոսպնյակներ: Այդ ոսպնյակներ դրվում են կոպերի տակ և կարելի է կրել 6-ից 8 ժամ: Չնայած ամերիկյան ակնոցները շատ անգամ ավելի հարմար են հպվող ոսպնյակներից, բայց վերջիններիս առավելությունն էլ կայանում է այն բանում, որ նրանք անտեսանելի են: Հպվող ոսպնյակները անփոխարինելի են կարճատես դերասանների, կրկեսի արտիստների, պարուհիների, սպորտսմենների համար: Հանքահորերում աշխատելու ժամանակ սովորական ակնոցները ծածկվում են փոշով, հյուսիսային շրջաններում՝ քրտնում են, իսկ ջրի տակ կատարվող աշխատանքներին պարզապես խանգարում են:

Մեզ մոտ, Սովետական Միությունում, հպվող ոսպնյակների հատուկ փորձարան է ստեղծված Մոսկվայում, Մինսկում, Թբիլիսիում, Տաշքենդում, Օդեսայում և Կիևում:

Այդպիսի ոսպնյակների պատրաստումը կապված է մեծ բարդությունների հետ: Դրանք պատրաստվում են անհատական պատվերներով: 150 տեսակի աչքի տարատեսակներից ընտրելով երկու աչքի համար ամենից հարմարը, ամենամեծ ճշտությամբ պատրաստում են դրանց կրկնօրինակները:

Պլաստմասայից պատրաստված ոչ մեծ թիթեղը տաքացնելով, ձգում են գիպսե կաղապարի վրա, որը պատճենահանված է աչքից և արդեն ընտրված ոսպնյակներից: Հետո ձևավորված թիթեղը տաշում են, հղկում և փորձում հիվանդի աչքին, թե արդյո՞ք լավ է նստում ակնախնձորի վրա, արդյո՞ք չի քորում աչքը: Եթե թերություններ կան, տեղն ու տեղը ուղղում են: Այս պատմությունը կրկնվում է մի քանի անգամ, մինչև որ հիվանդը իր աչքի վրա բոլորովին չզգա հպվող ոսպնյակի ներկայությունը:

Եվ միայն այս ամենից հետո օպտիկական հարմարանքի վրա ստեղծում են այն համակարգը, որը պետք է ուղղի հիվանդի տեսողությունը:

Եթե որևէ մեկը նման հպվող ոսպնյակներ է կրում, ապա դրանք հնարավոր է նկատել միայն շատ մոտիկից:

Ներկայումս աշխատանքներ են տարվում այսպես կոչված «լողացող ոսպնյակներ» ստեղծելու ուղղությամբ, որոնք պետք է լինեն աչքի բբի չափ:

Ռ. Մովսիսյան
բժիշկ

## ՔԱՄՈՒՑ ՉՀԱՆԳՉՈՂ ԼՈՒՑԿԻ

Չինաստանում «Պեյչժունխուախուա» լուցկու ֆաբրիկայում արտադրում են նոր տեսակի այնպիսի լուցկի, որն ունի անսովոր հատկություն. դա այն է, որ անգամ ուժեղ քամին չի կարող հանգցնել այդ լուցկին:

Այդպիսի լուցկին 10 վայրկյան վառվում է հավասարաչափ բոցով: Քամուց չվախեցող լուցկին ներծծված է քիմիական նյութերի այնպիսի բաղադրությամբ, որ հայտնագործել է ֆաբրիկայի երիտասարդ տեխնիկ Վեն Վենը:



## Մեր օրացույցը

# ՊՅՈՏՐ ՉԱՅԿՈՎՍԿԻ

Համաշխարհային երաժշտության հանճարեղ մշակների համաստեղության մեջ իր յուրահատուկ պայծառությամբ փայլում է Պ. Ի. Չայկովսկու անունը:

Նրա գրչին են պատկանում բազմաթիվ օպերաներ, բալետներ, սիմֆոնիաներ և այլ ստեղծագործություններ, որոնք լայն ժողովրդականություն են վայելում, դարձել են ժողովրդի սեփականությունը: Այդ ստեղծագործությունների մեջ մարդը գտնում է իր անցյալը, ներկան ու ապագան...

Պյոտր Իլյիչ Չայկովսկին ծնվել է 1840 թվականի ապրիլի 25-ին: Չնայած արտակարգ երաժշտական ընդունակություններին, ծնողները նրան սովորելու ուղարկեցին Պետերբուրգի Իրավաբանական ուսումնարան: 1862 թվականին նա ընդունվեց Պետերբուրգի կոնսերվատորիան: Կոնսերվատորիան ավարտելուց հետո



սկսվում են Չայկովսկու բեղմնավոր աշխատանքի տարիները:

1887 թվականին Չայկովսկին հեղինակային համերգներով հանդես է գալիս Եվրոպայի մեծ քաղաքներում, Ամերիկայում, և ամենուրեք պրոպագանդում Ռուսական երաժշտությունը:

Անգլիայում նրան շնորհում են երաժշտության դոկտորի բարձր կոչումը:

Ամեն տեղ, ուր նա հանդես էր գալիս, հասարակությունը ջերմորեն էր ընդունում նրան: Չայկովսկին գրում է. «Ես արտիստ եմ, որը կարող է և պարտավոր է պատիվ բերել իր հայրենիքին»: Եվ իրոք, նրա ողջ տաղանդը հագեցված է իր հայրենիքի նկատմամբ ունեցած սիրով ու նվիրվածությամբ: Չայկովսկու ստեղծագործություններից հանրահայտ են «Եվգենի Օնեգին», «Պիկովայա դամա» օպերաները, Վեցերորդ սիմֆոնիան, «Քնած գեղեցկուհին», «Կարապի լիճը» բալետները, Դաշնամուրային Առաջին կոնցերտը և այլն:

Պ. Ի. Չայկովսկին մեռավ 1893 թվականի հոկտեմբերի 25-ին Պետերբուրգում:

## ԱՆՀԱՎԱՏԱԼԻ

Տոկիոյի արվարձաններում կատարվող պեղումների ժամանակ 7 մետր խորության վրա լոտոսի սերմեր հայտնաբերվեցին: Ռադիոակտիվ ածխածնի օգնությամբ որոշվեց սերմերի հասակը՝ 3075 տարի: Չնայած դրան, ցանելուց հետո այդ սերմերը ոչ միայն ծլեցին, այլև ծաղկեցին և պտուղ տվեցին:

## Ռադիոկայան ունեցող ձուկը

*Փղի դունչ ու կնճիթ ունեցող մետրանոց այս ձուկը, որին անվանում են մորմիրուս, ապրում է Կենտրոնական Աֆրիկայի լճերում ու գետերում: Դիշատիչ կենդանիները չեն կարողանում այս ձկները որսալ, որովհետև նրանց պոչի կողմում կա մի մանիկ, որը մեկ րոպեում շրջապատին հաղորդում է 80—100 էլեկտրամագնիսական տատանումներ, իսկ գլխի մասում կա մի «ապարատ», որն ընդունում է այդ տատանումները իբրև վտանգից խուսափելու ազդանշան:*




## Հումոր

### ՀՆԱՐԱՄՏՈՒԹՅՈՒՆ

Ուսուցիչը մատով ցույց է տալիս աշխարհագրական քարտեզը և հարցնում.

— Սա ի՞նչ է, Կարլ:

— Ցուցամատ, պարոն ուսուցիչ:

### ԹՈՂ ՔՈ ԱՍԱԾԸ ԼԻՆԻ

— Էրնստ, դու այլևս չպետք է գնաս Հանսի մոտ: Նա վատ տղա է:

— Լավ, մայրիկ, թող նա գա ինձ մոտ:

### Ո՞Վ Է ԱՄԵՆԻՑ ԲԱՐՁՐ ԹՌՉՈՒՄ

Ուսուցիչը հարցնում է Հենրիխին.

— Ո՞վ է ամենից բարձր թռչում:

— Շունը:

— Շո՞ւնը:

— Այո: Չէ՞ որ Լայկայից բարձր դեռ չ ոք չի թռել:




(Սկիզբը 2-րդ էջում)

*րունը նրան տաս օր շուտ է այցի գալիս, և ամեն տարի նա պարծենկոտությամբ անակնկալ նվեր է բերում. լեռներն է բերում իր գարնան մի թեկորը:*

*Ես գոհ եմ ընկերոջս պարծենկոտությունից, ինձ ուրախացնում է անգնահատելի ընծան, և ինչ խոսք, որ հովտից լասաման բերող ընկերս իմ ամենացանկալի հյուրն է:*

*Բոլորը գիտեն, լասամանի կյանքը կարճատև է սենյակում. մեկերկու օր հիացնում է, շռայլում իր թարմությունն ու անուշահոտությունը, բայց մեկ էլ տեսար. վրա հասավ ծերությունը: Փակվում են փոքրիկ ծաղիկների աչիկները, գորշանում, թոշնում են թերթերը: Եվ որքան էլ ափսոսաս, պետք է զգուշորեն դուրս բերես սենյակից:*

*Բայց ես իմ լասամանը դուրս չեմ բերում: Մի հնար եմ գտել: Եթե ճյուղի ծայրը կտրեք և նոր կտրած մասն իջեցնեք համան ջրի մեջ, ապա լասամանը կկենդանանա: Ճիշտ է, ոչ երկար ժամանակով. թոնկվում է և մարում...*

*Պատուհանից դուրս ինչ-որ թեւեր են արծաթին տալիս: Դրանք բարդիների և խատուտիկների ագվամազերն են, որ փետուրների պես տեղում են տների տանիքներին, մայթերին, զբոսայգիների ծառուղիներին: Դարուն է եկել: Հիմա արդեն ինձ համար էլ դժվար չէ թարմ լասաման ճարելը, բայց ինչպես միշտ, ինքս ինձ հավատարիմ եմ մնում. թառամող լասամանը ժամանակից շուտ դուրս չեմ տանի:*

*Հիմա էլ: Վերցնում եմ թերթերը թափող լասամանի ճյուղը, ծայրը կտրում և իջեցնում հասցրած ջրի մեջ:*

*Թող ալրվի իմ լասամանը, չիմանալով, թե ինչ է ծերությունը:*




### Աշխարհագրական խմբակի օրագիր

ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ

## ՍՊԻՏԱԿ ԱԾՈՒԽԸ

1960 թվականի ապրիլի 3

*Այսօր, պարապմունքի ժամանակ ելույթ ունեցավ ընկեր Պետրոսյանը։ Նա ասաց.*

*— Գետերի ջրերը անվանում են սպիտակ ածուխ, որովհետև ջուրն էլ, ինչպես ածուխը, կարող է տալ ջերմություն, էներգիա։ Այդ նպատակով գետերի վրա կառուցում են էլեկտրակայաններ։ Մեզ անհրաժեշտ է ծանոթանալ Հայաստանի հիդրոէլեկտրակայանների հետ։*

*Մենք բոլորս էլ, իհարկե, համաձայնեցինք։ Որոշեցինք լինել գործող էլեկտրակայաններում, ապա տեսնել Երևանգէսի շինարարությունը, իսկ հետո խմբակի հերթական պարապմունքի ընթացքում զեկուցումներ լսել Հայաստանի էլեկտրիֆիկացիայի անցյալի և ապագայի մասին։*

*խմբակի ավագ՝ ԱՐՄԵՆ ԱԼԱՎԵՐԴՅԱՆ*

1960 թվականի ապրիլի 11

*Երեկ ամբողջ օրը հիդրոէլեկտրակայաններում էինք։ Քաղաքից դուրս եկանք վաղ առավոտյան և մեկնեցինք ուղիղ Սևան։ Այնտեղ տեսանք Սևանի ստորգետնյա կայանը։ Հետաքրքիր է, կայանը գտնվում է 100 մետր խորության վրա։*

*Դահլիճում գտնվող հզոր տուրբինները աշխատում են օր ու գիշեր։ Իսկ մարդիկ այստեղ գրեթե չկան։ Բանն այն է, որ ամեն ինչ կատարում են ինքնաշարժ մեքենաները։*

*Տուրբինները աշխատում են, իսկ հերթապահը միայն հետևում է թվատախտակների ցուցմունքներին։*

*... Վերադարձի ճանապարհին ընկեր Պետրոսյանն ասաց, որ հիմա Սևան—Հրազդան կասկադի վրա աշխատում են Սևանի, Աթարբեկյանի, Գյումուշի, Արզնու և Քանաքեռի էլեկտրակայանները։*

*ԱՐԱՄ ՍԱՐԳՍՅԱՆ*

1960 թվականի ապրիլի 18

*Երեկ նորից գնացել էինք էքսկուրսիայի։ Միայն թե այս անգամ քաղաքից դուրս չեկանք, որովհետև գնացինք Երևանգէսի շինարարությունը տեսնելու։ Առավոտյան, երբ մենք արդեն հավաքվել էինք դպրոցում, ընկեր Պետրոսյանը ասաց, որ Երևանի էլեկտրակայանը միայն թունել կունենա։ Ոչ մի մետր բաց ջրանցք չի լինի։ Թունելը կսկսվի քաղաքի հյուսիսային մասերից, կանցնի փողոցների տակով և դուրս կգա հենց էլեկտրակայանի մոտ։*

*Երևանգէսի թունելի երկարությունը լինելու է գրեթե 3 կիլոմետր։ Էլեկտրակայանի շենքը կառուցել են մանկական երկաթուղու մոտ։ Հիմա արդեն այնտեղ աշխատում են տուրբիններ տեղադրող բանվորները։*

*Երևանգէսի շինարարությունը կավարտվի այս տարվա նոյեմբերի 29-ին, Հայաստանում Սովետական կարգեր հաստատվելու 40-ամյակի օրը։*

*ԱՆԱՀԻՏ ԿԱԿՈՍՅԱՆ*

1960 թվականի ապրիլի 24

*Հայաստանի էլեկտրիֆիկացիային նվիրված մեր վերջին պարապմունքը, որը տեղի ունեցավ այսօր, սկսվեց իմ զեկուցմամբ։*

*1913 թվականին Հայաստանում կային մի քանի էլեկտրակայաններ, որոնք կառուցել էին վաճառական Ն. Շուստովը, գործարանատեր-եղբայրներ Գաբրիելյանները և այլ ուրիշ բուրժուաներ։ Բայց դրանք շատ փոքրիկ, հնացած և նույնիսկ ծիծաղելի կայաններ էին։*

*Իսկ դաշնակցականների տիրապետության ժամանակ սկսվեցին բոլորովին մռայլ օրեր։ Գյուղերում ծայր առավ սովը, կանգ առան փոքրիկ արհեստանոցները, որոնք այն ժամանակ համարվում էին գործարաններ։ Կանգնեցին նաև մի քանի էլեկտրակայանները։*

*Բայց շուտով Հայաստանում հաստատվեց Սովետական իշխանություն։ Այդ օրերին Լենինը գրեց, որ Կովկասին անհրաժեշտ է «անմիջապես բարելավել գյուղացիների դրությունը և սկսել էլեկտրիֆիկացիայի խոշոր աշխատանքները»։*

*1923 թվականին Հրազդանի վրա սկսվեց № 1 Երգէսի շինարարությունը։ 1926 թվականին այդ էլեկտրակայանը արդեն հոսանք էր տալիս։ Փոքրիկ կայան էր, բայց ամեն դեպքում երկու անգամ մեծ այն բոլոր կայաններից որոնք մինչ այդ*



գործում էին Հայաստանում, 1928 թվականին սկսեց աշխատել Լենինականի ԳԷՍ-ը: 1932 թվականին ավարտվեց Սովետական Միության առաջին ինքնաշարժ էլեկտրակայանը՝ № 2 Երգէսը: Նույն թվականին սկսեց աշխատել ևս մի նոր կայան՝ Ձորագէսը:

ՎԱՐԱԶԴԱՏ ՄՈՎՍԻՍՅԱՆ

Ես նյութ ունեցա Վարազդատից հետո: Խոսեցի Սևան—Հրազդան կասկադի էլեկտրակայանների մասին: Հայաստանը ածուխ, նավթ և գազ չունի: Էլեկտրակայանները կարելի է կառուցել միայն գետերի վրա: Ահա թե ինչու որոշեցին Հրազդան գետի վրա կառուցել մի շարք էլեկտրակայաններ: Հենց այդ կայաններն էլ միասին կոչվում են Սևան—Հրազդանի կասկադ:

Առաջինը աշխատել սկսեց Քանաքեռի ԳԷՍ-ը: Դա 1936 թվականին էր: Հետո պատերազմը խանգարեց: Այդ պատճառով էլ Սևանի ԳԷՍ-ը թողարկեցին միայն 1949 թվականին: Չորս տարի անց աշխատել սկսեց կասկադի ամենահզոր՝ Գյումուշի կայանը: 1956 թվականին թողարկվեց Արզնի ԳԷՍ-ը: Իսկ անցյալ տարի, սկսեց աշխատել Աթարբեկյան ԳԷՍ-ը: Կասկադի վերջին կայանը Երևանյանն է, որը թողարկվելու է այս տարի:

Հետաքրքիր է նաև այն, որ Հայաստանում յուրաքանչյուր մարդուն ավելի շատ էլեկտրաէներգիա է հասնում, քան այնպիսի երկրներում, ինչպիսիք են Անգլիան, Ավստրիան, Հոլանդիան, ԳՖՌ, Բելգիան: Ճապոնիայի և Ֆրանսիայի համեմատությամբ—նույնիսկ երկու անգամ ավելի է հասնում, Իտալիայի հետ համեմատած—3 անգամ: Իսպանիայի հետ—4 անգամ, Իրանի հետ—106 անգամ: Մեր ռեսպուբլիկան 25 անգամ փոքր է Թուրքիայից, բայց նրանից 2 անգամ ավելի էլեկտրաէներգիա է ստանում:

ՍՈՍ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Իմ զեկուցման թեման էր «Հայաստանի էլեկտրիֆիկացիայի ապագան»:

Առաջներում որոշել էին էլեկտրակայանների



համար օգտագործել Սևանի ջրերը: Իսկ հիմա վճռված է դադարեցնել Սևանից ջուր վերցնելը: Եվ ավելին, հնարավորին չափ Սևանի ջրերը շատացնել:

Բայց մեզ համար հիմա մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա է անհրաժեշտ, իսկ հետո նրա

պահանջը էլ ավելի կզգացվի։ Այս հարցը վճռել են հետևյալ կերպ.

Առաջին։ Ադրբեջանից գազ բերել և դրա հիման վրա ջերմային էլեկտրակայաններ կառուցել Երևանում, Հրազդանում և Կիրովականում։ Գազն արդեն եկել է։ Մենք բոլորս էլ տեսանք այս տարվա փետրվարի 12-ին Լենինի հրապարակում վառվող ջահը։ Երևանի ջերմակայանի կառուցումը արդեն սկսել է։

Երկրորդ։ Հաղորդալարերով միացնել Ադրբեջանի, Վրաստանի և Հայաստանի էլեկտրակայանները։ Այդ դեպքում Մինգեչաուրի ԳԷՍի էներգիայի մի մասը Ադրբեջանից կգա մեզ մոտ։

Երրորդ։ Որոտան գետի վրա էլեկտրակայանների ևս մի կասկադ կառուցել։

Շատ շուտով կսկսվի Տաթևի ԳԷՍի շինարարությունը, որը այդ կասկադի առաջին կայանն է։

Բացի դրանից ապագայում էլեկտրակայաններ կկառուցվեն Դեբեդ, Արփա, Ձկնչի և այլ գետերի վրա։

Էլ ավելի հետաքրքիր է այն, որ Սովետական կարգեր հաստատվելու 40-ամյակի նախօրյակին Հայաստանը ՍՍՌՄ-ում առաջին ռեսպուբլիկան կլինի բոլոր քաղաքների, գյուղերի և ավանների էլեկտրիֆիկացիայով։

ԶԱՎԵՆ ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ



# ՀԱՎԱՏՈՒՄ ԵՆՔ...

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



Նկ. Կ. ՌՈՒԽԿՅԱՆԻ

Ես չեմ տեսել պատերազմ,
Բայց երբ տանը իմ քեռին
Ման է գալիս հազիվհազ,
Հենված փայտե ոտքերին,
Հասկանում եմ, թե ինչո՞ւ
Իմ լավ քեռին ոտք չունի
Եվ ուզում եմ, որ կյանքում,
Երբէք կռիվ չլինի...

Ես չեմ տեսել պատերազմ,
Բայց ընկերն է՝ իմ ասել,
Թե հայրիկն իր գալու է,
Միայն պիտի սպասել...
Տարիներ են անցկացել,
Էլ նա «հայրիկ» չի ասում,
Նրա սրտում քարացավ
Մի դառնացած սպասում:

Մենք ուզում ենք մեծանալ
Երգով, խաղով ու անվիշտ,
Հայրիկ, մայրիկ ունենալ,
Առողջ տեսնել նրանց միշտ...
Մեր կյանքն ունի հազար երգ,
Հազար թռիչք ու երազ.
Հավատում ենք, հայրիկներ,
Էլ չի՛ լինի պատերազմ...

# ԴՈՒՔ ԷԼ ԿԱՐՈՂ ԵՔ



Անցել է արդեն երեք տարի այն օրից, երբ օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնի հանդիսասրահներում, բեմում և ցեխերում շրջում էին մի խումբ փոքրիկ երեխաներ՝ իրենց երբեմն զարմացած, երբեմն հիացած հայացքները ուղղելով այս կամ այն նկարին, քանդակին, ծառին կամ դեկորին: Դրանք Երևանի համար առաջին գիշերօթիկ դպրոցի 5-րդ դասարանի երեխաներն էին, որ այդ օրը ծանոթանում էին օպերային թատրոնին: Յուրաքանչյուր քանդակ, յուրաքանչյուր գեղարվեստական սափոր մեծ հաճույք էր պատճառում նրանց: Քիչ անց գնացին բեմ ու, հրաշապատումներով լեցուն այն աշխարհը, որ նրանք սովոր էին դիտել դահլիճից միայն, կանգնեց նրանց առաջ որպես իրական ու շոշափելի մի վայր: Քիչ հետո նրանք եղան արտադրական ցեխերում, և ապա մեծ հիացմունքով ու վառ տպավորություններով դուրս եկան թատրոնի շենքից:

Ճանապարհին բոլորի ուղեղում էլ մի միտք էր պտտվում. «Ի՜նչ հիանալի կլիներ, երբ մենք էլ սովորեինք այդ ամենը և մեր դպրոցում էլ կազմակերպեինք ներկայացումներ»:

Եվ այդ մտահղացմանը սիրով աջակցեց օպերային թատրոնը:

Այդ օրից, երեխաները շաբաթական մեկ-երկու օր մի քանի ժամով գալիս են թատրոնի տարբեր ցեխերը, այնտեղ անցկացնում իրենց արտադրական պրակտիկան:

Ահա բուտաֆորական ցեխը: Այստեղ երեխաները սովորում են զանազան առարկաներ՝ ծառեր, թփեր, ծաղիկներ պատրաստել: Պատրաստվածը օգտագործում են իրենց բեմադրությունների համար: Դրանցից շատերը կարելի է տեսնել դպրոցի տարեվերջյան ցուցահանդեսում: Այսպե՛ս օրինակ՝ «Պոչատ աղվես» օպերայի մակետը, «Միշտ միասին» պիեսի մակետը, բեմի զանազան դեկորներ և այլն: Հետաքրքիր է նաև կեղծամագործների և դիմահարդարման ցեխերում, այնտեղ երեխաները սովորում են դիմահարդարման գործը, պատրաստում են բեղեր, մորուքներ, կեղծամներ: Ցուցահանդեսներում դրված բեղերը և մորուքները ամենահետաքրքիր էքսպոնատներն էին: Բեմադրությունների ժամանակ երեխաներն իրենք են դիմահարդարման աշխատանքները կատարում և այն էլ շատ հաջող:

Հետաքրքիր է նաև բազմաթիվ լուսային էֆեկտներ ստեղծելը: Այդ աշխատանքները կատարում են էլեկտրիկները, որոնք մասնակցում են օպերայի էլեկտրո-ցեխի աշխատանքներին: Նրանք կարողանում են ստեղծել հիանալի պեյզաժներ: Ահա նրանցից մեկը:

Երեկո է: Բեմը իրենից ներկայացնում է անտառամերձ մի գյուղ, որը ձուլվում է անտառի ֆոնին: Առաջին պլանի վրա խարխուլ մի տնակ է. բակում բռնկլտում է խարույկը, հեռվից լսվում է շների հաչոցը ու միանալով աքաղաղների կանչին, նորից անհետանում մթության մեջ: Որոտում են ամպերը, փայլատակում է ամպրոպը ու մերթ ընդ մերթ լուսավորում խավարի մեջ խորասուզված անտառը: Մաղում է բարակ անձրև:

Այս տեսարանը «Պոչատ աղվեսը» օպերայի առաջին գործողության պատկերն է, որը բեմադրվեց ճիշտ այնպես, ինչպես նկարագրված է: Ամեն ինչ պատրաստել են երեխաները: Գուցե ձեզնից շատերը կհարցնեն, թե ինչպե՞ս պատրաստել դրանք: Դժվար չէ, փորձեցեք և դուք էլ կկարողանաք: Այսպես օրինակ՝ լուսային էֆեկտները բազմաթիվ են և բազմապիսի. դրանցից յուրաքանչյուրն ունի իր մասերն ու բաժինները: Մեր բերած օրինակի համար անհրաժեշտ է պատրաստել խարույկ, ունենալ մեկ կամ երկու թերթ թիթեղ, ածուխներ, որոնք օգտագործվում են կինոապարատներում, որպեսզի հնարավոր լինի վերը նշված տեսարանը բեմադրել: Իսկ դա էլ պատրաստվում է այսպես:

Բեմը լուսավորում ենք, երբ գիշեր է կապույտ լույսով, երբ ցերեկ է սովորական լույսով: Խորհուրդ է տրվում ամպրոպը ցուցադրել կապույտ լույսի տակ կամ մթնում:

Երկու փայտերի մեջ փորում ենք անցք, այն չափով, որպեսզի օգտագործվող ածուխները ամուր տեղավորվեն այդ անցքերի մեջ: Ածուխների ծայրերն ամուր միացնում ենք էլեկտրական լարերի ծայրերին, իսկ լարի մյուս ծայրերը ամրացնում ենք խրոցին ու անցկացնում փայտերի անցքի մեջ, այնպես, որ փայտերը ծառայեն որպես բռնակներ: Դրանք պետք է ածուխներից լավ մեկուսացված լինեն, իսկ ածուխը փայտից 20—25 սմ. երկարությամբ դուրս պետք է մնա (տե՛ս նկար 1): Լարերը միացնելով էլեկտրական խցակին, ածուխները շփում ենք իրար հետ, ստացվում է կարճ միացում: Բեմը վայրկյանապես լուսավորվում է ու մթնում:

Ստացվում ճիշտ ամպրոպի տպավորություն: Այդ էֆեկտից օգտվել թույլատրելի է միայն բարձր դասարանների աշակերտներին, կամ մեծերին, որոնք գիտեն էլեկտրականության հետ վարվել և հասկանում են նրանից օգտվելու պայմանները: Այլ կերպ, վտանգավոր է: Ածուխներն իրար անհրաժեշտ է շփել կամաց, որպեսզի նրանք չկոտրվեն: Խրոցը խցակին միացնելուց հետո պետք



Նկ. 1



Նկ. 2



Նկ. 3

է զգույշ լինել, քանի որ ածուխները արդեն լարվածության տակ են: Խստիվ արգելվում է նրանց ձեռք տալ: Հարկավոր է բռնել միայն փայտե բռնակներից: Վերջացնելուց անմիջապես հետո անհրաժեշտ է անջատել խրոցը:

Որոտի էֆեկտը ստեղծելու համար անհրաժեշտ է վերցնել մեկ կամ երկու բերր թիթեղ, բռնել մի ծայրից, կախել ուղղահայաց դիրքով, օդի մեջ կամաց դողացնելով ձեռքը, թիթեղը շարժել ետ ու առաջ (տե՛ս նկ. 2): Պետք է ձգտել, որ նմանվի բնականին, այսպես՝ սկզբում իրար են միանում ածուխները, ապա անջատվում, հետո սկսվում է թիթեղի շարժումը, սկզբում կամաց, հետո ուժեղ, կամ ընդհակառակը:

Բոցկլտացող խարույկ պատրաստելու համար անհրաժեշտ է կտրել մի տախտակ 50×50 սմ. չափերի, կենտրոնում բացել մի անցք, ուր պետք է ամուր նստի էլեկտրական լամպը: Մի կողմից ամրացվում է թիթեղի կտոր, այնպես, որ թիթեղը ծածկի կենտրոնում գտնվող լամպը: Հաղորդալարի ծայրը դուրս է գալիս տախտակի տակից ու միանում էլեկտրական ցանցին (տե՛ս նկ. 3): Մոդելը դրվում է բեմի վրա այնպես, որ դահլիճի կողմից լամպը չերևա, այսինքն մնա թիթեղի ետևում, նրա հետևի մասում դրվում է մի ցանց, վրան ամրացվում է շղարշե մի կտոր: Ցանցը դրվում է այնպես, որպեսզի նրա տակ ազատ պտտվի թևերով դեպի վեր ուղղված հովհանաչիկը (տե՛ս նկ 4): Լամպը պետք է կարմիր գույնի լինի: Երբ այս ամենը միանում է էլեկտրական ցանցին, խարույկը սկսում է բոցկլտալ, այսինքն շղարշե ծայրերը սկսում են ծածանվել կարմիր լույսի տակ: Պատրաստված տախտակի չորս կողմից խարույկի նման փայտեր են դարսվում:

Բազմաթիվ են այն էֆեկտները, որ պատրաստում են գիշերօթիկ դպրոցի սաները: Երբ դուք էլ ձեր դպրոցում կուզենաք որևէ պիես բեմադրել, և երբ որևէ հարցում դժվարանաք, հարցրեք նրանց: Անպայման կօգնեն:

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

*1-ին գիշերօթիկ դպրոցի մանկավարժ*



նկ. 4

# Հարցրու — կպատասխանենք

*Հարգելի խմբագրություն.*
*Ինչու՞ են հրաբուխները առաջանում լեռնագագաթներում և ոչ թե հարթավայրերում:*
*Եթե դժվար չի լինի, ապա խնդրում եմ պատասխանեք նաև, թե ի՞նչ կապ ունի եղանակի փոփոխությունը լուսնի հետ:*

Նորա Հայրապետյան

*Աշտարակի շրջանի Փարպի գյուղի միջնակարգ դպրոցի 8-րդ դասարանի աշակերտուհի:*

1

Հրաբուխները երկրագնդի խորքում գտնվող մագմայի արտավիժման արդյունքներն են: Մագման գտնվում է շատ բարձր ջերմաստիճանների և ճնշման տակ: Ժայթքումը սկսվելիս, ճնշումը փոքրանում է, իսկ մագմայի զանգվածը արագորեն մեծանում: Նա այս երևույթն էլ հենց առաջացնում է հսկայական ավերածություններ, պայթյուններ և այլն:

Հրաբխային ապարատը բաղկացած է հրաբխային կոնից, խառնարանից և հրանցքից: Երկրի մակերեսի վրա հրաբուխները կարող են տեղադրված լինել թե՛ հարթավայրերում և թե՛ օվկիանոսների ու ծովերի հատակին:

Իսկ ինչու՞ են հրաբուխները մեծ մասամբ առաջանում լեռներում:

Մինչև այժմ ընդունված է այն տեսությունը, որ երկրի կարծր կեղևը լողում է մագմայի վրա այնպես, ինչպես նավը՝ ծովում: Իսկ կեղևը բացարձակ անշարժության մեջ չի գտնվում: Այդ պատճառով էլ առաջանում են ծալքեր կամ ճկումներ, որոնց տակ մագմայի մեծ քանակություն է հավաքվում:

Երկրի կեղևի վրա առաջացած ծալքերը փաստորեն լեռներն են: Նրանց տակ կուտակված մագման գազերի ազդեցության տակ ուղղահայաց դուրս է ժայթքում գագաթից:

Հրաբուխներ կարող են լինել ոչ միայն լեռներում, այլև հարթավայրերում, եթե նրանց խորքում մագմայով լցված ճեղքեր կան: Այդպիսի հարթության վրա են առաջացել Հայաստանի Արայի, Հատիս, Ջյոթանդաղ լեռները:

Ինչպես վերևում ասացինք, հրաբուխներ են լինում նաև ծովերում ու օվկիանոսներում: Ամենից շատ հրաբխային լեռներ կան Խաղաղ օվկիանոսում: Այդ հրաբուխների հետևանքով շատ հաճախ առաջանում են այնպիսի կղզիներ, ինչպիսիք են Հավայան, Ալեության կղզիները:

2

Ոչ միայն Նորային, այլև շատ-շատերին է հետաքրքրում այն հարցը, թե արդյո՞ք լուսինը որևէ կերպ ազդում է եղանակի վրա:

Վաղուց արդեն հայտնի է, որ լուսնի ձգողական ուժի հետևանքով երկրագնդի մթնոլորտային շերտերում տեղի են ունենում մակընթացություններ ու տեղատվություններ: Նշանակում է, օդային մակընթացության ալիքները պետք է զգալի կերպով փոփոխության ենթարկեն մթնոլորտային ճնշումը:

Բայց այս կարծիքը սխալ է: Օդային մակընթացության ալիքի բարձրությունը 0,5 մետրից չի անցնում, իսկ նման չնչին փոփոխության դեպքում մթնոլորտային ճնշումը (հետևապես նաև եղանակը) գրեթե չի փոխվի:

Թե ինչպիսի եղանակ կլինի վաղը, հեշտ չէ գուշակել: Կարելի է նույնիսկ ասել, որ օդերևութաբանության մեջ եղանակի գուշակման հարցը ամենադժվար հարցն է և կապված է բազմաթիվ բարդությունների հետ:

Իմանալու համար, թե վաղը ինչպիսի եղանակ պետք է լինի, մասնագետներին անհրաժեշտ է ունենալ այսօրվա եղանակի մասին մանրակրկիտ տեղեկություններ:

Օդերևութաբանների համար կան հատուկ քարտեզներ, որոնք ցույց են տալիս, թե մթնոլորտի տարբեր շերտերում ինչպիսի հոսանքներ գոյություն ունեն, արդյո՞ք այդ հոսանքները տեղաշարժվում են, ինչպիսի՞ արագությամբ են տեղաշարժվում և այլն:

Այս ամենն իմանալուց հետո կարելի է գուշակել վաղվա եղանակը: Ճիշտ է, երբեմն սխալներ են լինում: Օրինակ, ռադիոն հայտնում է, թե վաղը պետք է արև օր լինի, բայց պարզվում է, որ առավոտից երկինքը ամպերով է ծածկված: Ինչո՞վ բացատրել այդ սխալները: Բանն այն է, որ եղանակը գուշակելու համար անհրաժեշտ են բազմաթիվ հաշվումներ, որ հնարավոր չէ կատարել մի օրվա ընթացքում: Շուտով օդերևութաբանները իրենց տրամադրության տակ կունենան էլեկտրոնային-հաշվիչ մեքենաներ, որոնք աներևակայելի արագությամբ կարող են լուծել ամեն տեսակի խնդիրներ: Եվ այն ժամանակ, եղանակը երբեք սխալ չի գուշակվի: Հնարավոր կլինի ոչ թե ընդհանուր առմամբ, այլև նախապես նույնիսկ ասել, թե օրվա որ ժամին, ինչպես է փոխվելու եղանակը:

Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

*Ինժեներ-երկրաբան*




(1860—1921)

Մի անգամ Հովհաննես Այվազովսկին ընտանիքով շրջագայում էր Բախչիսարայում։ Նա իր հետ բերել էր նաև բարեկամներից մեկի որդուն՝ պատանի Վարդգեսին։ Վերջինս կլանված դիտում էր շրջապատի գեղեցկությունները, լսում հռչակավոր ծովանկարչի բացատրությունները...

Դիտելով նշանավոր շատրվանը, արևելյան ճոխ նախշերով ոճավորված ճարտարապետական այլ շինությունները ու լսելով Այվազովսկուն, պատանին մտովի տեղափոխվում է այն հեռավոր ժամանակները, երբ Բախչիսարայում իշխում էին ոսկեկար հագուստներով ու թանկարժեք զարդերով պարուրված դաժան խաները, որոնք արյունահեղ արշավանքներով թալանում էին գյուղեր ու քաղաքներ, սրահատում մանկանց ու ծերերին։

Մութ զնդաններում տառապում էին խանի շղթայակապ գերիները. բանտային ծառայողները ծեծում, խոշտանգում էին նրանց մերկ մարմինները։ Մի այլ տեղ հեծում էին ստրկացված կանայք, որոնց բռնությամբ գերեվարել էր խանը տարբեր երկրներից՝ ոչնչացնելով նրանց գերդաստանը, ծնողներին։

Այս տպավորություններով էլ Վարդգեսը Բախչիսարայից վերադառնում է տուն և մատիտով նկարում տեսածն ու պատկերացրածը։ Այվազովսկին հիանում է պատանու նկարներով, ներկեր է նվիրում իր փոքրիկ բարեկամին և օգտակար խորհուրդներ տալիս նրան։

Վարդգես Սուրենյանը Մոսկվայի Լազարյան ճեմարանն ավարտելուց հետո սովորում է Մոսկվայի Գեղարվեստի ուսումնարանում և Մյունխենի Գեղարվեստի Ակադեմիայում։

Ավարտելով ուսումը՝ Սուրենյանը ճանապարհորդում է շատ երկրներում, լինում է Իտալիայում, Իսպանիայում, Պարսկաստանում և այլուր։ Ամեն տեղ նա աշխատում էր անդադրում, ծանոթանում երկրի պատմությանը, ժողովրդի նիստուկացին, ճարտարապետությանը, բնության առանձնահատկություններին։ Արևելքի երկրներում Սուրենյանը ամբողջացրեց այն տպավորությունները, որ վաղ պատանեկության տարիներին ստացել էր Բախչիսարայում։ Դա նրան հնարավորություն տվեց ձևավորելու Պուշկինի «Բախչիսարայի շատրվանը» պոեմը։ Նկարիչը իր ձևավորումներով օգնում է

ավելի խոր ընկալելու պոեմում նկարագրված դեպքերը, հերոսների հոգեբանական ապրումները։

Սուրենյանի հարուստ ստեղծագործության մեջ զգալի տեղ է գրավում մանկական թեմատիկան։ Նա անսահմանորեն սիրում էր երեխաներին և իր գործերով խրախուսում նրանց քաջությունը, ազնըվությունը, խելամիտ արարքները։

Նկարիչը սրտացավ վերաբերմունք է ցուցաբերել այն երեխաների նկատմամբ, որոնք հնարավորություն չեն ունեցել ապրելու ազատ ու երջանիկ կյանքով։ Օրինակ «Ֆիրդուսին կարդում է իր «Շահնամեն» Սահմուդ շահին» կտավում պատկերված է այն պահը, երբ արևելքի մեծ բանաստեղծ Ֆիրդուսին իր նորաստեղծ պոեմը ընթերցում է պալատական պարտեզում հանգիստ առնող սառնասիրտ ու արյունարբու Սահմուդին։ Ծառաները հնազանդորեն սպասում են նրա հրամանին, իսկ կտավի ձախ մասում, շահի մոտ կանգնած է մի փոքրիկ տղա, որը թաթիկներով բռնել է ուտելիքով լի մեծ սինին և իրավունք չունի շարժվելու տեղից։ Հոգնել է, թախիծ կա նրա դեմքին, ուզում է հեկեկալ, բայց դրա իրավունքն էլ չունի։ Շուրջը ծաղաստաններ են, թռչունները են երգում, թիթեռները թռվռում, իսկ նա ստրուկի հեզությամբ ստիպված է տանել իր տառապանքը։ Կուզենար չունենալ այդ մետաքսե շորերը, գեղեցիկ ոտնամաններն ու գլխարկը, բայց լիներ ազատ, խաղար իր նման փոքրիկների հետ, վազվզեր ու երգեր...

Դիտենք սովորական մոխրագույն ստվարաթղթի փոքր կտորների վրա գույներով նկարված երկու պատկեր ևս։ Դրանք Հ. Թումանյանի բոլորիս սիրելի «Գառնուկ ախպեր» ստեղծագործության թեմայով կատարված պատկերներն են։ Առաջինում գլխիկոր քայլում է Մանուշը, իսկ նրան հետևում է արդեն գառնուկ դարձած մայող եղբայրը։ Որբերը ցավ են պատճառում իրենց դժբախտ կացությամբ, ի՞նչ է սպասում առջևում... Եվ ահա երկրորդ պատկերում, գեղեցիկ Մանուշը նստած է գահին, ժպտում է ուրախությունից, երջանիկ է։ Նրա հետ են սիրելի եղբայրը և քաջ արքայազնը։ Երկու գործերն էլ կատարված են մեկ-երկու գույների խառնուրդներով, զարմանալի պարզությամբ ու բարձր ճաշակով։ Այդպիսին են նաև Սուրենյանի հայկական բազմաթիվ հեքիաթների ձևավորումները։ Նկարիչը վարպետությամբ գտել է ձևավորվող յուրաքանչյուր ստեղծագործության յուրահատուկ գծերը, հիմնական գաղափարը, գործող անձերի հոգեբանությունները արտահայտող պատկերման համապատասխան ձևեր։

Վարդգես Սուրենյանը մեր ազգային կուլտուրայի ամենանշանավոր գործիչներից է, որ իր ամբողջ կյանքը նվիրել է հայ նկարչության զարգացմանը։ Եվ ժողովուրդը բարձր է գնահատում հայրենիքին իր զավակի մատուցած ծառայությունները, սիրում է նրա արվեստը, միշտ թարմ, միշտ գեղեցիկ նրա գործերը։ Նրա թողած հարուստ ժառանգության մեծ մասը ցուցադրվում է Հայաստանի պետական պատկերասրահում։ Երեխաներ, գնացեք այնտեղ և ձեզ հետաքրքրող շատ բան կիմանաք Սուրենյանի մասին։

*Վ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ*



ԻԴԵԼՍՈՆԻ ԴԻՄԱՆԿԱՐԸ

# Վ Ա Ր Դ Գ Ե Ս



«ԲԱԽՉԻՍԱՐԱՅԻ ՇԱՏՐՎԱՆԸ» ԳՐՔԻ
ՏԻՏՂՈՍԱԹԵՐԹԸ



«ՈՍԿՈՒ ԿԱՐԱՍԸ» ՀԵՔԻԱԹԻ
ՆԿԱՐԱԶԱՐԴՈՒՄՆԵՐԻՑ



«ՀԱՅԿԱԿԱՆ ՀԵՔԻԱԹՆԵՐ» ԳՐՔԻ
ՆԿԱՐԱԶԱՐԴՈՒՄՆԵՐԻՑ

# ՍՈՒՐԵՆՅԱՆԻ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻՑ



«ԱՐԵՎՀԱՏ ԵՎ ՕՁԱՄԱՆՈՒԿ» ՀԵՔԻԱԹԻ ՆԿԱՐԱԶԱՐԴՈՒՄՆԵՐԻՑ



«ՄՈԽՐՈՏԸ» ՀԵՔԻԱԹԻ ՆԿԱՐԱԶԱՐԴՈՒՄՆԵՐԻՑ



«ՀԱՅԿԱԿԱՆ ՀԵՔԻԱԹՆԵՐ» ԳՐՔԻ ՎԵՐՆԱՇԱՊԻԿԸ



# ԵՐԲԵՔ ՄԻ ՎՍՏԱՀԻՐ ՎԱՃԱՌԱԿԱՆԻՆ

*(Հին հնդկական հեքիաթ)*

Փ. Ք. ԱԹՐԻ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Դարեր առաջ Հնդկաստանում ապրում էր մի ծերունի բրահման: Շատ ուսյալ մարդ էր, բայց չքավոր էր, չէր կարողանում ապրուստը հոգալ: Նա ուներ կին ու երեխաներ:

Մի օր կինը բարկացած ասաց նրան.

— Քեզ պես էլ ծույլ ամուսի՞ն, ինչու՞ ոչ մի բան չես անում, մի քիչ փող վաստակես: Ես ինչպե՞ս կերակրեմ քեզ ու երեխաներին:

— Այս քաղաքում աշխատանք չեմ ճարում: Մի ուրիշ քաղաք գնամ, աշխատանք փնտրեմ,— պատասխանեց բրահմանը:

Բրահմանը հաջորդ օրը վաղ առավոտյան ճանապարհ ընկավ դեպի հեռավոր մի քաղաք: Կեսօրվա դեմ՝ մի անտառով անցնելիս սովածացավ: Կինը մի քիչ հաց էր տվել, բայց որտեղի՞ց ջուր ճարեր: Եվ ահա հանկարծ նա տեսավ քար ու քանդ եղած, մութ մի հոր: Երկար պարանի ծայրին մի կաթսա կապեց և կախեց հորը, որ ջուր քաշի:

Իսկույն աղիողորմ, բայց խուպոտ մի ձայն լսվեց հորի միջից.

— Ո՜վ բրահման, ի՜նչ կլինի ինձ այստեղից հանես:

— Այդ ո՞վ է խնդրում, որ դուրս հանեմ իրեն,— հարցրեց բրահմանը:

Ձայնը ներքևից ասաց.

— Ես վագր եմ, պատահմամբ այստեղ ընկա:

— Եթե քեզ դուրս հանեմ, կհոշոտես ինձ, էլ ինչո՞ւ ազատեմ քեզ,— գոչեց բրահմանը:

— Աստված վկա, երդվում եմ, ոչ մի վնաս չեմ հասցնի քեզ:

Եվ այսպես՝ բրահմանը պարանով դուրս քաշեց վագրին: Վագրը շնորհակալություն հայտնեց ու ասաց, թե մոտակա քարայրում է ապրում և մի օր պարտքի տակից դուրս կգա:

Բրահմանը մի անգամ էլ կաթսան հորը գցեց և փորձեց դուրս քաշել:

Բայց իսկույն մի ձայն լսեց.

— Ո՜վ բրահման, ի՜նչ կլինի ինձ այստեղից հանես:

— Իսկ դու ո՞վ ես,— հարցրեց բրահմանը:

— Ծերացած մի օձ եմ, պատահմամբ այստեղ ընկա և հիմա ինչ անում եմ՝ չեմ կարողանում դուրս գալ,— փշշաց օձը ներքևից:

— Իսկ եթե քո թունավոր ատամով կծե՞ս ինձ,— ասաց բրահմանը:

— Մի՛ վախենա,— գոչեց օձը,— աստված վկա, երդվում եմ, ոչ մի վնաս չեմ հասցնի քեզ:

Եվ այստեղ, բրահմանը պարանի օգնությամբ փրկեց օձին: Բարձր խոտերի միջով անհետանալիս՝ օձը բրահմանին ասաց.

— Հենց որ նեղն ընկնես, հերիք է անունս տաս, ես իսկույն օգնության կհասնեմ քեզ:

Երբ բրահմանը երրորդ անգամ փորձեց հորից ջուր քաշել, հոհռացող մի ձայն լսվեց ներքևից:

— Ո՜վ բրահման, վագրին ու օձին ազատեցիր, ինձ չե՞ս ազատի: Ես կապիկ եմ, ոչ ոքի վնաս չեմ հասցնում:

Բրահմանը գթաց նրան և անմիջապես դուրս քաշեց հորից:

— Ես ապրում եմ ա՛յ այն բարձր ծառի ճյուղերի մեջ: Եթե պատահի, այս ճամփով անցնես, կանչիր ինձ: Ես պարտքի տակ չեմ մնա,— ասաց կապիկը և չքացավ:

Հորից ջուր չքաշած՝ բրահմանը չորրորդ անգամ ներս նայեց ու բղավեց.

— Հորի մեջ էլ չմնա՞ց մեկը, որ ուզում է դուրս գալ:

— Այո՛, մեկն էլ մնաց,— ասաց մարդկային մի ձայն:

— Իսկ դու ո՞վ ես,— հարցրեց բրահմանը։

— Չե՞ս հիշում ինձ, ով բրահման։ Ձեր քաղաքից մի վաճառական եմ։ Փորձում էի այս հորից խմելու ջուր քաշել՝ մեջն ընկա,— ասաց մարդը։

Եվ այսպես, բրահմանն անմիջապես դուրս քաշեց նրան։ Հրաժեշտ տալիս՝ վաճառականը խոստացավ կարիքի դեպքում օգնել բրահմանին։

Ապա բրահմանը թեթևացած շունչ քաշեց։ Հանգիստ սրտով կերավ հացը, ջուր խմեց ու գնաց։ Ուշ երեկոյան նա տեղ հասավ, բայց այդ քաղաքում էլ ոչ մի աշխատանք չգտավ։ Մի շաբաթ այնտեղ մնալուց հետո, որոշեց հայրենի քաղաքը վերադառնալ։

Անտառի միջով անցնելիս՝ բրահմանը հիշեց կապիկին ու բարձրաձայն կանչեց նրան։ Եվ ահա, ի՜նչ մեծ ուրախություն, մի ծառի գագաթից ցած նետվեց կապիկը և կանգնեց բրահմանի առաջ, կարմիր ու փայլուն մի պտուղ ձեռքին։

— Տե՛ս, ինչ եմ բերել քեզ համար,— ասաց կապիկը։

— Ի՞նչ է դա,— հարցրեց բրահմանն անհամբեր։

— Երիտասարդության ծառի պտուղն է,— պատասխանեց կապիկը։— Հերիք է մի փոքր ուտես, կըջահելանաս կսիրունանաս։

Բրահմանը կապկի ձեռքից խլեց պտուղը և մի խոշոր պատառ կծեց։ Մի ակնթարթում բրահմանը ջահելացավ, դարձավ ուժեղ ու եռանդուն մի երիտասարդ։ Նա սրտանց շնորհակալություն հայտնեց կապկին և պտուղի մնացած մասը պահեց կնոջ ու երեխաների համար։

Ապա հիշեց վագրին։ Ինչու՞ չդիմի նրան։ Կապկի օգնությամբ շուտով գտավ նրա քարայրը։ Վագրը շատ ուրախացավ, երբ տեսավ բրահմանին։

— Տես, քեզ ի՛նչ եմ տալու,— գոչեց վագրը և ադամանդե մի մանյակ տվեց նրան։

Մանյակի տեսքը շլացրեց բարհմանի աչքերը։

— Ի՞նչպես ճարեցիր,— հարցրեց բրահմանը շընչակտուր։

Ինչպես ճարեցի՞,— ուրախ բացականչեց վագրը։— Ես սպանեցի երեկ այս կողմերը որսի եկած իշխանին։ Իմացիր, որ սա արքայական մանյակ է։

Բրահմանի երջանկությանը չափ չկար։ Նա տուն վերադարձավ երիտասարդ ու հարուստ։ Սկզբում կինը չճանաչեց նրան։ Բրահմանը կնոջն ու երեխաներին խնդրեց մի-մի պատառ կծել պտուղից, և ապա նրանք էլ դարձան առույգ ու գեղեցիկ։ Բայց երբ բրահմանը արքայական մանյակը ցույց տվեց իր կնոջը, սա շատ վախեցավ։

— Մեր ինչի՞ն է պետք այս մանյակը,— ասաց նա։— Ես չեմ կարող ազատ օգտագործել։ Թագավորն իսկույն կձերբակալի մեզ։ Տար ծախիր և դրամը բեր, որ գրանից հետո ուրախ ու երջանիկ կյանք անենք։

Բրահմանը հիշեց վաճառականին, որ խոստացել էր օգնել իրեն։ Մանյակը վերցրեց գնաց նրա մոտ



և խնդրեց, որ գնի այն։ Վաճառականը շատ զարմացավ, երբ տեսավ արքայական մանյակը բրահմանի ձեռքում։

— Դու ինչպե՞ս ձեռք բերեցիր այս,— հարցրեց նա։

— Անտառի վագրը տվեց,— պատասխանեց բրահմանը։

Վաճառականը խնդրեց բրահմանին, որ մի քիչ սպասի իր խանութում։ Ապա տան ետևի դռնով փախավ դեպի թագավորի պալատը։ Իսկ թագավորը սգում էր որդու մահը։

— Օ՜, ձերդ վեհափառություն,— բացատրեց վաճառականը,— ես բռնել եմ այն մարդուն, որ սպանել է ձեր որդուն, մեր սիրելի իշխանին և կողոպտել նրա ադամանդե մանյակը։

— Իսկ ո՞րտեղ է այդ թշվառականը,— որոտաց թագավորը։

— Հենց հիմա նստած է իմ խանութում, արքայական մանյակը ձեռքին,— պատասխանեց վաճառականը։

Թագավորն իր թիկնապահներին ուղարկեց և տեղն ու տեղը բռնել տվեց բրահմանին։ Խեղճ բրահման, նա չկարողացավ զոհացուցիչ պատասխան տալ, թե ինչպես էր տիրացել արքայական մանյակին։ Վագրն ինչպե՞ս կարող էր այդ մանյակը տալ նրան։ Բրահմանը լաց եղավ ու գութ հայցեց։ Բայց թագավորը մահվան դատապարտեց նրան։ Ինչպե՞ս կարող էր գթալ մի մարդու, որ սպանել էր իր որդուն և հափշտակել նրա մանյակը։

Բրահմանը բանտ նետվեց։ Մյուս առավոտ պիտի մեռներ նա։ Եվ ահա հանկարծ հիշեց օձին։ Հենց որ հիշեց օձին, սա գալարվելով անկյունի ծակից ներս ընկավ։ Բրահմանը պատմեց, թե ինչ փորձանք էր եկել գլխին։

— Գիտեմ,— ասաց օձը։— Երբեք մի մտահոգվիր։ Հիմա կասեմ, թե քեզ ինչպես կազատեմ այդ փորձանքից։ Հենց այս գիշեր կգնամ պալատ և թունավոր ատամովս կկծեմ թագուհուն։ Եվ նա կմեռնի։ Իսկ քեզ կտամ մոգական մի ուժ, այնպես որ, միմիայն դու կարողանաս քո ձեռքերի հպումով կենդանացնել թագուհուն։

Օձը կատարեց իր խոստումը։ Թագուհին մեռավ նրա խայթվածքից։ Ամբողջ պալատը սգում էր թագուհու մահը։ Բրահմանին այդ առավոտ մահապատժի չենթարկեցին։ Եվ ահա բրահմանն ասաց պահակապետին. «Թե թույլ տաք, ես կկենդանացնեմ մեռած թագուհուն։ Մոգական մի ուժ ունեմ ես։ Բայց կկենդանացնեմ այն պայմանով, որ ինձ ազատեք»։

— Այդ մասին մի էլ մտածի,— գոչեց պահակապետը ուրախացած։— Հենց հիմա հետս պալատ արի։

Մեռած թագուհին պառկած էր անկողնում, իսկ թագավորը սնարին նստած՝ աղի արցունք էր թափում։ Բրահմանը ներս բերվեց, և հենց որ ձեռքերով դիպավ թագուհու ոտներին, սա դանդաղ բացեց կոպերը, ասես թե քնից զարթնեց։

Թագավորի ուրախությանը չափ չկար։ Նա ոչ միայն վերացրեց բրահմանի մահապատիժը, այլև կենսաթոշակ նշանակեց, մի տուն և շատ արժեքավոր նվերներ պարգևեց։

Դրանից հետո բրահմանը ում պատահեր, ասում էր.

— Օձին վստահի՛ր, վագրին վստահի՛ր, վաճառականին երբեք մի՛ վստահիր։

Անգլերենից թարգմանեց ՀՐԱՉ ԲՈՒԺԻԿԱՆՅԱՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Համարն ունի առանձին էջեր՝ հոկտեմբերիկների համար


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕԶԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

ՎՖ 08049. Պատվեր 648։ Տպաքանակ՝ 8000։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 4/V 1960 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։ Գինը 2 ռ.



Ա. ԶԻԳԱՆՇԻՆ

# ՍՈՎՈՐԱԿԱՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԻԿ

Օրերն անցնում են օրերի ետևից, շաբաթները՝ շաբաթների:

Ոչ ջուր կա և ոչ էլ ուտելիք: Ինչքա՞ն ժամանակ է, որ նրանք այս անհուսալի վիճակում են: Գուցե մի ամիս... Գուցե մի ամբողջ տարի...

Ալիքները ծառս են լինում: Նավակը գալարվում է նրանց գրկում: Մահի մռայլագույն փոթորիկը տարածվում է տախտակամածի վրա: Նավակը տխուր ճռռում է: Հեռու արևը մայր է մտնում: Գիշեր...

Նրանք քնում են հերթով: Քնում են հանգիստ: Նրանք այդպես հանգիստ էին նաև առաջներում, երբ ուտելու բան կար: Մահը չորսին մեկ մարդ էր դարձրել: Չորսից ոչ մեկի մտքով անգամ չէր անցնում ընկերոջ քնած ժամանակ մի կում ջուր խմել կամ ուտել կես հատ կարտոֆիլ:

Նրանք նույնիսկ հավասար բաժին արեցին հին հարմոնի կաշվից եփած ապուրը: Կերան մեծ ախորժակով: Համով էր արդյոք այդ տարօրինակ «կերակուրը»: Ոչ ոք այդ մասին չէր մտածում:

Իսկ հիմա, երբ ծով դուրս գալու օրից մի ամբողջ հավերժություն է անցել, երբ արդեն կերել են թե կոշիկները, թե հարմոնը, երբ ջրային այս ահավոր դժոխքից փրկվելու ոչ մի հույս չկա՝ նրանք մեկ մարդ դարձած երգում են:

Ալիքները իրենց մռնչոցով ուզում են խեղդել երգը, բայց դա չի հաջողվում: Երգում են նրանք հայրենի անտառների ու տափաստանների մասին, լեռների ու անհուն երկրի մասին:

... Նորից գիշեր:

Քանի՞ այսպիսի գիշերներ են անցել: Ոչ ոք չի հիշում:

Իսկ ծովը մոլեգնում է, բնությունը իր հսկա թոքերով փչում է նավակի վրա իր ցուրտ շունչը:

Մեկը գլուխը փոքր ինչ բարձրացնում և զգուշությամբ ծածկում է ընկերոջը: Հանկարծ բոլորն էլ արթնանում են: Բոլորն էլ զգում են, որ իրենք չորսն են, որ իրենք շատ ուժեղ են:

Ցուրտը նահանջում է:

Նրանք ննջում են:

... Լուսաբացին, երբ նրանք զարթնում են, մեկը վարանելով հարցնում է.

— Կդիմանա՞նք:

— Այո:

— Ինչքա՞ն:

Ավագը գրպանից հանում է կեռ մեխերը՝ կարթերը ու պահածոյի տուփից պատրաստած խայծը:

— Մինչև շնաձուկ բռնենք, — ասում է նա:

Գիշերային թանձր խավարը նոսրանում է:

— Իսկ եթե բռնեցինք, — շարունակում է ավագը, — և մի լավ հաց կերանք, ապա նորից հարցրու: Այն ժամանակ ավելի որոշակի կպատասխանեմ:

Նստում են նավակի տախտակամածին և կարթերը նետում ջուրը:

Մտասույզ նայում են ալիքներին: Մտածում են: Դժվար է գուշակել, թե ինչի մասին: Մի բան միայն պարզ է: Ոչ ոք չի մտածում անձնատուր լինել տարերքին:

Ամպերը չվում են... խավարը ավելի է նոսրանում: Հորիզոնի վրա հայտնվում է լուսավոր մի նեղ շերտ:

Նրանք կարթերը ջուրը նետած համառությամբ սպասում են:

Երբ հաջողվի շնաձուկ բռնել, այն ժամանակ ամեն բան որոշակի կլինի:

Արևը ծագում է:

Սկսվում է դրեյֆի վերջին, 49-րդ օրը:

... Երբ ամերիկյան ծովայինները գտան Ասխատ Զիգանշինին, Ֆիլիպ Պոպլավսկուն, Անատոլի Կրյուչկովսկուն և Իվան Ֆեդոտովին, մնացին ապշած: Հյուծված էին սովետական խիզախները, ուժասպառ, բայց նրանց աչքերում փայլում էր կամքի անսահման ուժը, հավատը:

Ամբողջ աշխարհը ցնցեց նրանց խիզախության լուրը, իսկ ամերիկացիները զարմացել էին:

— Ինչ մարդիկ եք դուք, վերջապես, — հարցնում էին նրանց:

— Սովորական մարդիկ ենք. Սովետական մարդիկ:



Ի. ՖԵԴՈՏՈՎ



Ա. ԿՐՅՈՒՉԿՈՎՍԿԻ



Ֆ. ՊՈՊԼԱՎՍԿԻ

2 ռ.

# Ծաղկաձոր

Խոսք՝ ՍԱՐՄԵՆԻ

Երաժշտ.՝ ԱԶԱՏ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Tempo di marcia

*) + մաժոր

2\. Նստած ծորում, ուր կարկաչով
Արծաթ առվակն է հոսում,
Երջանկության երգ ու կանչով
Ծաղկեպսակ ենք հյուսում. } կրկնել

Մենք քո սարերն ենք բարձրանում,
Անցնում թե գետ, թե գետակ.
Գագաթներից երկրին նայում՝
Ամպերը մեր սրտի տակ: } կրկնել

3\. Դու մեզ համար հանգստյան տուն,
Մարմին կոփող մարզարան,
Դու մեր սրտի ուրախություն,
Մեր սիրելի խաղարան. } կրկնել

Ինչ էլ լինի, ուր էլ գնանք՝
Քեզ կհիշենք ամեն օր,
Մեր հարազատ, մեր աննմա՛ն
Կանաչ աշխարհ Ծաղկաձոր: } կրկնել